

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 1982

## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



Издательство ЦК КП Армении. «Ленинян угиов», 1982.



# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում են ընդունել «Բնակչության առողջության պահպանումը բարելավելու լրացուցիչ միջոցառումների մասին»:**

Որոշման մեջ նշվում է, որ կուսակցական և սովետական մարմինները, առողջապահության մարմինները, մինիստրությունները, գերատեսչությունները ու հասարակական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել կուսակցության XXVI համագումարի որոշումների, առողջապահության հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների կենսագործման ուղղությամբ:

Առողջապահության բնագավառում կուսակցության և կառավարության կողմից անցկացվող սոցիալ-տնտեսական խոշոր միջոցառումների շնորհիվ դրական արդյունքներ են ձեռք բերվել սովետական մարդկանց առողջական վիճակում: Զգալիորեն զարգացել է առողջապահության նյութատեխնիկական բազան:

Ստացիոնար հիմնարկների ցանցը 1978—1981 թթ. ավելացել է 243,8 հազար մահճակալով և կազմել 3.384 հազար մահճակալ, կառուցվել են հերթափոխի ընթացքում 481,6 հազար հաճախումների համար նախատեսված ամբուլատոր պոլիկլինիկական հիմնարկներ, գյուղում կազմակերպվել են 1.240 ամբուլատորիաներ: Ուսումնական հաստատություններում պատրաստվել են ավելի քան 190 հազար բժիշկներ և միջին բուժանձնակազմի 508 հազար աշխատողներ:

Բարձրանում է բուժօգնության կազմակերպման մակարդակը առողջապահության սկզբնական օղակներում՝ պոլիկլինիկաներում, շտապ և անհետաձգելի բժշկական օգնության հիմնարկներում, տեղամասային հիվանդանոցներում և գյուղական ամբուլատորիաներում, բժշկական պրակտիկայում ավելի լայնորեն են օգտագործվում հիվանդների ապարատային, գործիքային և լաբորատոր զննման մեթոդները, իրականացվում է թերապևտիկ և մանկաբուժական տերիտորիալ բուժտեղամասերի ապախոշորացում, բարձրացել է դրանց կոմպլեկտավորվածությունը բժիշկներով: Առողջապահության հիմնարկները սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել հիվանդությունների կանխարգելման և բնակչության դիսպանսերացման միջոցառումների անցկացմանը:

Է՛լ ավելի է զարգացել մասնագիտացված բժշկական օգնությունը: Ստեղծվել է սրտաբանական ծառայություն: Միջոցառումներ են անցկացվում կանանց ու երեխաների առողջության պահպանումը բարելավելու ուղղությամբ: Կատարելագործվում է բժշկական կադրերի պատրաստման և նրանց որակավորման բարձրացման սիստեմը: Գիտնականները մշակել են ախտորոշման և բուժման նոր մեթոդներ, որոնք ավելի ու ավելի լայն կիրառություն են գտնում բժշկական հիմնարկների աշխատանքի պրակտիկայում:

Միաժամանակ նշված է, որ բնակչությանը ցույց տրվող բժշկական օգնության որակը բարձրացնելու հնարավորությունները ամենևին էլ լրիվ չափով չեն իրականացվում: Դանդաղ են վերացվում հիվանդանոցների, պոլի-

կլինիկաների, գյուղական ամբուլատորիաների, շտապ բժշկական օգնության
հիմնարկների աշխատանքի կազմակերպման, պրոֆիլակտիկ աշխատանքի
անցկացման գործում տեղ գտած թերությունները: Պատշաճ զարգացում չեն
ստացել գիտական հետազոտությունները հիվանդությունների կանխարգել-
նամ բնագավառում: Ժամանակակից բժշկական սարքավորումներով անբա-
վարար են զինված առողջապահության սկզբնական օղակի հիմնարկները:
ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները, միութենական
հանրապետությունների մինիստրների խորհուրդները լրիվ չափով չեն իրա-
գործում սանիտարաառողջարարական միջոցառումների կոմպլեքսային պլան-
ները: Առողջապահության օբյեկտների կառուցման առաջադրանքները ժա-
մանակին չեն կատարվում: Մի շարք անհրաժեշտ դեղամիջոցների հարցում
առողջապահության հիմնարկների պահանջարկը լրիվ չափով չի բավարար-
վում, կան դեղամիջոցների առկա ռեսուրսների մատակարարման, բաշխման
և օգտագործման ժամկետների խախտումներ:

Ծատ մինիստրություններ և գերատեսչություններ չեն կատարում առող-
ջապահության հիմնարկներին որոշ դեղորայքի և բժշկական տեխնիկայի,
սանիտարական ավտոմոբիլների մատակարարման առաջադրանքները: Դան-
դաղ է մեծացվում մանկական հատուկ սննդամթերքների արտադրությունը:

ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունը, տեղական կուսակցական
և սովետական մարմինները չեն վերացրել բժշկական կադրերի հետ տար-
վող աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունները: Կան բժշկական անձ-
նակազմի կողմից ծառայողական պարտքի խախտման փաստեր, մի բան,
որը բնակչության արդարացի գանգատների տեղիք է տալիս: Պատշաճ մի-
ջոցառումներ չեն իրականացվում բժշկական կադրերին ամրացնելու, նրանց
համար աշխատանքային ու բնակկենցաղային անհրաժեշտ պայմաններ ըս-
տեղծելու ուղղությամբ:

Բնակչության առողջության պահպանման հետագա բարելավման աշխա-
տանքը համարելով կուսակցության XXVI համագումարի առաջադրած կա-
րևորագույն սոցիալական խնդիրներից մեկը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն
և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը միութենական հանրապետությունների
կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին և մարզկոմնե-
րին, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խոր-
հուրդներին, ժողովրդական դեպուտատների երկրամասային և մարզային
սովետների գործկոմներին, մինիստրություններին և գերատեսչություններին
պարտավորեցրել են շարունակել աշխատանքը «Ժողովրդական առողջապա-
հության հետագա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի
և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ սահմանված առաջադրանքների
կատարման ուղղությամբ, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասա-
րակական կազմակերպությունների հետ համատեղ ապահովել բնակչությանը
ցույց տրվող բժշկական օգնության կազմակերպումը կատարելագործելու
լրացուցիչ միջոցառումների անցկացումը:

Ուշադրությունը կենտրոնացնել հիվանդությունների պրոֆիլակտիկայի
հետագա ուժեղացման, տրավմատիզմի կանխման, շրջակա միջավայրի առող-
ջացման, աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների բարելավման,
սովետական մարդկանց մեջ առողջության պահպանման և ամրապնդման
նկատմամբ գիտակցական վերաբերմունքի դաստիարակման վրա: Լրացու-
ցիչ միջոցներ ձեռնարկել հիվանդանոցների, պոլիկլինիկաների, ամբուլատո-
րիաների, դեղատների, բժշկական տեխնիկայի նորոգման ձեռնարկություն-
ների ու առողջապահության մյուս օբյեկտների, ինչպես նաև բժշկական ար-
դյունաբերության ձեռնարկությունների կառուցման սահմանված պլանները
կատարելու և դրանց ժամանակին գործարկումն ապահովելու համար: Բարե-
լավել առողջապահության ղեկավար աշխատողների ընտրությունը, ուժեղաց-
նել բժշկական կադրերի դաստիարակության աշխատանքը, բարձրացնել
նրանց պատասխանատվությունը իրենց մասնագիտական և ծառայողական
պարտքի կատարման համար, բնակչությանը բժշկական օգնություն ցույց
տալու որակի և կուլտուրայի համար, վճռականապես վերջ դնել Սովետական



Միության բժշկի երդման խախտումներին, հիվանդների նկատմամբ անուշա-
դիր և անհոգի վերաբերմունքի դրսևորումներին, շահադիտական նպատակ-
ներով պաշտոնական դիրքի օգտագործմանը: Ապահովել առողջապահու-
թյան հիմնարկների գործունեության լայն հրապարակայնությունը, սիստեմա-
տիկաբար անցկացնել նրանց ղեկավարների հաշվետվություններ բնակչու-
թյան առջև, առողջապահության մարմինների գործունեությունը քննարկել
կուսակցական և սովետական կազմակերպություններում: Միջոցներ ձեռնար-
կել բժիշկների, միջին բժշկական անձնակազմի և դեղագործական աշխա-
տողների, առանձնապես առողջապահության գյուղական հիմնարկներում աշ-
խատողների համար աշխատանքային և կենցաղային պատշաճ պայմաններ
ստեղծելու ուղղությամբ:

Բնակչության առողջության պահպանման աշխատանքի արդյունավետու-
թյան բարձրացման, սրտանոթային, ուռուցքային, թոքային, էնդոկրինային,
նյարդային և այլ հիվանդությունների կանխարգելման, ժամանակին հայտ-
նաբերման, արդյունավետ բուժման և հիվանդների աշխատունակության վե-
րականգնման նպատակով ՍՍՀՄ առողջապահության մինիստրությանը և
միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին առա-
ջարկված է.

գյուղական շրջաններում միջոցառումներ իրականացնել առողջապահու-
թյան կառավարումը կատարելագործելու, բժշկական ամբուլատորիաների
ցանցը ընդլայնելու, շտապ և անհետաձգելի բժշկական օգնությունը զարգաց-
նելու ուղղությամբ.

ուժեղացնել ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկների պրոֆիլակ-
տիկ գործունեությունը, խոշոր պոլիկլինիկաների կազմում ստեղծել պրոֆի-
լակտիկայի բաժանմունքներ, կատարելագործել հաջորդայնությունը բուժ-
պրոֆիլակտիկ հիմնարկների աշխատանքում.

բարձրացնել բնակչության, ամենից առաջ կանանց ու երեխաների պրո-
ֆիլակտիկ զննումների և դիսպանսերացման որակը, զարգացնել բժշկագե-
նետիկական կոնսուլտացիաների ցանցը և կատարելագործել դրանց աշխա-
տանքը, ուժեղացնել դեռահասների ու երիտասարդների շրջանում տարվող
բուժական-առողջարարական աշխատանքը.

բարելավել երեխաների բժշկական սպասարկումը նախադպրոցական
հիմնարկներում, հատուկ ուշադրություն դարձնելով երեխաների առողջական
վիճակի սիստեմատիկ հսկման և առողջարարական միջոցառումների անց-
կացման ապահովմանը.

տասնմեկերորդ հնգամյակում և հետագա տարիներին կոնսուլտատիվ-
ախտորոշիչ պոլիկլինիկաներ (բաժանմունքներ) կազմակերպել բժշկական
բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական ին-
ստիտուտների, բազմապրոֆիլ խոշոր հիվանդանոցների բազայի վրա.

ապահովել տերիտորիալ պոլիկլինիկաներում բուժսանիտարական կե-
տերում բժշկական բարձրագույն ուսումնական հաստատությունների ու գի-
տահետազոտական ինստիտուտների որակյալ մասնագետների կողմից բնակ-
չության սիստեմատիկ կոնսուլտատիվ ընդունելությունների անցկացումը և
այդ մասնագետների այցելությունները գյուղական բուժպրոֆիլակտիկ հիմ-
նարկներ.

1983—1987 թվականներին իրականացնել հանրապետական, երկրամա-
սային և մարզային հիվանդանոցներում հեռուստաախտորոշիչ կաբինետների
(կենտրոնների) կազմակերպումը սրտանոթային հիվանդությունների ախտո-
րոշման համար, դրանք զինել համապատասխան ապարատներով.

ուժեղացնել պետական սանիտարական հսկողության ներգործունությու-
նը և առաջին հերթին գյուղատնտեսական արտադրության ու արդյունաբե-
րական հիգիենայի բնագավառում, սիստեմատիկաբար կատարելագործել
սանիտարահիգիենիկ կանոններն ու նորմաները, միջոցներ ձեռնարկել գյու-
ղում սանիտարահամաճարակաբանական կայանների ամրապնդման, դրան-
ցում միջշրջանային լաբորատորիաների ստեղծման ուղղությամբ:

Որոշումը բժշկական արդյունաբերական մինիստրությանը և ՍՍՀՄ ա-

առողջապահության մինիստրությանը պարտավորեցնում է ապահովել լայնորեն կիրառվող դեղամիջոցների արտադրության զգալի ավելացումը, դրանց համաչափ մատակարարումը, այդ դեղամիջոցների հարցում առողջապահության հիմնարկների և բնակչության պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը: Միջոցներ ձեռնարկել ընդլայնելու բուժական պրակտիկայում օգտագործելու համար հարմար ձևերով և չափերով դեղամիջոցների թողարկումը: Բարձրացնել ձեռնարկությունների ղեկավարների պատասխանատվությունը դեղամիջոցների արտադրության պլանների կատարման համար՝ սահմանված նոմենկլատուրայով և դրանց մատակարարումների վերաբերյալ պայմանագրային պարտավորություններին համապատասխան: Իրականացնել դեղատնային հիմնարկների ցանցի հետագա ընդլայնում և դրանց աշխատանքի կատարելագործում, ավելացնել շրջիկ դեղատնային կետերի թիվը, ռացիոնալ օգտագործել դեղամիջոցների ռեսուրսները: Ավելացնել փոքր մեքենայացման միջոցների թողարկումը հիվանդների սպասարկումը բարելավելու և բուժպրոֆիլակտիկ հիմնարկների բժշկական անձնակազմի աշխատանքը թեթևացնելու համար:

ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը և ՍՍՀՄ առողջապահության մինիստրությանը հանձնարարված է լրացումներ մտցնել բարձրագույն ու միջնակարգ բժշկական ուսումնական հաստատությունների ուսումնական պլանների և ծրագրերի մեջ, նկատի ունենալով ուսուցման պրոցեսում ուսանողների և սովորողների գործնական պատրաստման բարելավումը:

ՍՍՀՄ մինիստրություններին և գերատեսչություններին, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին իրավունք է վերապահված՝ սովխոզների և մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարներին թույլատրել, ինչպես նաև կոլտնտեսություններին խորհուրդ տալ ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի տարեկան արդյունքների հիման վրա այդ ձեռնարկությունների (կազմակերպությունների) և կոլտնտեսությունների նյութական խրախուսման ֆոնդի հաշվին պարգև հավելավճար տալ գյուղական տեղամասային հիվանդանոցների, ամբուլատորիաների, բուժմանկաբարձական կետերի և պրոֆիլակտորիում-սանատորիաների այն բժշկական աշխատողներին, ովքեր հասել են աշխատողների առողջության պահպանման աշխատանքի բարելավման և նրանց հիվանդանալու դեպքերի նվազեցման:

Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին հանձնարարված է 1983—1985 թվականներին ապահովել շտապ և անհետաձգելի բժշկական օգնության կայանների և ենթակայանների ցանցի ընդլայնումը:

Նախատեսվում է 1984 թվականի հունվարի 1-ից լրացուցիչ արտոնություններ սահմանել շտապ և անհետաձգելի բժշկական օգնության կայանների (բաժանմունքների), սանիտարական ավիացիայի կայանների և պլանային ու շտապ կոնսուլտատիվ օգնության բաժանմունքների արտագնա բրիգադների միջին բժշկական անձնակազմի համար (այդ պաշտոններում աշխատելու անընդհատ ստաժի համար՝ ամենամսյա հավելավճարներ, եռօրյա լրացուցիչ արձակուրդ):

ՍՍՀՄ մինիստրություններին ու գերատեսչություններին, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին թույլատրված է արտադրական օբյեկտների կառուցման համար հատկացվող կապիտալ ներդրումների հաշվին կառուցել նոր ծննդատներ, կանանց կոնսուլտացիաներ ու մանկական պոլիկլինիկաներ, ընդլայնել և վերակառուցել հները:

ՍՍՀՄ առողջապահության մինիստրությանը և ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիային հանձնարարված է միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների, մինիստրությունների ու գերատեսչությունների, ինչպես նաև ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի հետ համատեղ, ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի և ՍՍՀՄ աշխատանքի ու սոցիալական հարցերի պետական կոմիտեի հետ հա-



մաձայնեցնելով՝ 1983—1984 թվականներին մշակել և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում իրականացնել հիվանդությունների պրոֆիլակտիկայի ուժեղացման և բնակչության առողջության ամրապնդման աշխատանքների կոմպլեքսային ծրագիր: Ընդսմին նախատեսել աշխատանքի պայմանների և պահպանության հետագա բարելավում, սանիտարաառողջարարական միջոցառումների անցկացում՝ նպատակ ունենալով իջեցնել ժամանակավոր անաշխատունակության, պրոֆեսիոնալ հիվանդություններով հիվանդանալու դեպքերի, արտադրական տրավմատիզմի և հաշմանդամության մակարդակը, առողջացնել շրջակա միջավայրը, ակտիվացնել բնակչության հիգիենիկ դաստիարակության աշխատանքը, ուժեղացնել ալկոհոլը չարաշահող անձանց վրա հասարակական ներգործության միջոցները, պայքարել մյուս վնասակար սովորությունների դեմ, որոնք իջեցնում են աշխատունակությունը և վատացնում առողջական վիճակը: Զարգացնել բնակչության ակտիվ հանգիստը, արմատավորել մասսայական ֆիզիկական կուլտուրան և սպորտը, ընդլայնել պրոֆիլակտորիում-սանատորիաները, տուրիստական ու ֆիզկուլտուրային մարզական բազաները և մյուս առողջարարական հիմնարկները և բարձրացնել դրանց օգտագործման արդյունավետությունը:

ՍՍՀՄ առողջապահության մինիստրությանը և ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիային առաջարկված է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մասնակցությամբ 1983—1985 թվականներին ընդլայնել գիտական հետազոտությունները կլիմայաաշխարհագրական տարբեր գոտիներում սրտանոթային, ուռուցքային, թոքային, էնդոկրինային, նյարդահոգեկան և այլ հիվանդությունների առաջացման պատճառների ուսումնասիրման, դրանց նախնական պրոֆիլակտիկայի գիտական հիմունքների, վաղ ախտորոշման ու բուժման արդյունավետ մեթոդների մշակման, երեխաների ու դեռահասների առողջության ամրապնդման ուղղությամբ:

Բնակչության մասսայական պրոֆիլակտիկ բուժզննումների և դիսպանսերացման ապահովման, հիվանդությունների վաղ հայտնաբերման և հիվանդների բուժման համար որոշմամբ միջոցներ են նախատեսված բժշկական միկրոանալիզի մեթոդներ ու միջոցներ մշակելու և պրակտիկայում ներդնելու, ժամանակակից կլինիկական բիոքիմիական հետազոտությունների անցկացման համար սարքերի ու ռեակտիվների թողարկումն ավելացնելու, այդ նպատակների համար անհրաժեշտ լաբորատոր սարքավորումների արտադրությունը զարգացնելու ուղղությամբ: Համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների համար սահմանված են մասնագիտացված սանիտարական ավտոտրանսպորտով, դիսպետչերական ապարատներով, շտապ ու անհետաձգելի բժշկական օգնության հիմնարկների և ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկների համար նախատեսված բժշկական տեխնիկայով առողջապահության կարիքները ապահովելու առաջադրանքներ: ՍՍՀՄ մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությանը և ՍՍՀՄ սննդարդյունաբերության մինիստրությանը հանձնարարված է ավելացնել դիետիկ մթերքների և մանկական հատուկ սննդամթերքների արտադրությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ մինիստրություններին ու գերատեսչություններին, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին պարտավորեցրել են ՀԱՄԿԽ-ի, արհմիությունների կենտրոնական կոմիտեների և հանրապետական խորհուրդների հետ համատեղ բարձրացնել ձեռնարկությունների, կազմակերպությունների և հիմնարկների ղեկավարների պատասխանատվությունը սանիտարական կանոնների և նորմաների, աշխատանքի անվտանգության ստանդարտների խստիվ կիրառման համար, աշխատողների աշխատանքի ու հանգստի պայմանների հետագա բարելավմանը նպատակամղված առողջարարական միջոցառումների անցկացման համար, հատուկ ուշադրություն նվիրել հիգիենիկ նորմաների կիրառմանը գյուղական բնակավայրեր հատակագծելիս և կառուցապատելիս, բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դերը առողջության համար վնասակար սովորությունների, առանձնապես ալկոհոլիզմի և ծխելու դեմ մղվող պայքարում, ուժեղացնել ձեռնարկություններում, հիմ-

նարկներում և կազմակերպություններում բարենպաստ բարոյահոգեբանական մթնոլորտ ստեղծելու աշխատանքը, ձեռնարկությունների սոցիալ-տնտեսական զարգացման պլաններում նախատեսել հիվանդությունների պրոֆիլակտիկայի բարելավման և աշխատողների առողջության ամրապնդման, արտադրական տրավմատիզմի և պրոֆեսիոնալ հիվանդացության մակարդակի հետագա նվազեցման միջոցառումներ, ապահովել քաղաքային մանկական նախադպրոցական հիմնարկների, մանկատների համար քաղաքամերձ ամառանոցների, պիոներական ճամբարների ցանցի հետագա ընդլայնումը, դպրոցներին և նախադպրոցական հիմնարկներին, պիոներական ճամբարներին կից ստեղծել պարզագույն մարզակառույցներ ու մարզահրապարակներ, ավելացնել մանկական նախադպրոցական հիմնարկների, դպրոցների և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների համար հատուկ կահույքի, ինչպես նաև փոքր չափերի տեխնիկայի, գործիքների, մարզահարմարանքների և ուսումնաարտադրական պրակտիկայի համար անհրաժեշտ այլ սարքավորումների արտադրությունը:

Շահագրգռված մինիստրություններին, գերատեսչություններին և հասարակական կազմակերպություններին հանձնարարված է ուժեղացնել հիգիենիկ գիտելիքների և ունակությունների տարածման աշխատանքը առանձնապես երեխաների ու դեռահասների շրջանում, միջոցներ ձեռնարկել բարելավելու սանիտարական ակտիվի պատրաստումը և նրան ավելի լայնորեն ներգրավելու պրոֆիլակտիկ միջոցառումների անցկացման մեջ, ակտիվացնել հեռուստատեսության, ռադիոյի, կինոյի, կուլտուր-լուսավորական հիմնարկների մասնակցությունը բնակչության հիգիենիկ դաստիարակությանը:

Հիվանդությունների պրոֆիլակտիկայի և բնակչության առողջության ամրապնդման համապատասխան միջոցառումների մշակման և իրականացման, այդ բնագավառում կուտակված փորձի ընդհանրացման և տարածման գործում մինիստրությունների, գերատեսչությունների և հասարակական կազմակերպությունների գործունեությունը կոորդինացնելու համար ՍՍՀՄ առողջապահության մինիստրությանն առընթեր ստեղծվում է միջգերատեսչական խորհուրդ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հաստատ վստահություն են հայտնում, որ միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրամասային և մարզային կոմիտեները, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդները, ժողովրդական դեպուտատների երկրամասային և մարզային սովետների գործկոմները, մինիստրությունները, գերատեսչությունները, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունները, առողջապահության բոլոր աշխատողները կապահովեն ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան ու 1982 թվականի մայիսյան պլենումների որոշումների հաջող կենսագործումը և անհրաժեշտ միջոցներ կձեռնարկեն հիվանդությունների պրոֆիլակտիկան ուժեղացնելու, բնակչության առողջությունն ամրապնդելու և սովետական մարդկանց ակտիվ ստեղծագործական կյանքը երկարացնելու համար:

---




ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ՄԵԾ ՏՈՆԻՆ՝ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԳՈՐԾԵՐՈՎ

**Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի
առաջին քարտուղար

*ՄԵԿՈՒԿԵՍ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարից: Ամենուրեք սովետական մարդիկ հերոսական պայքար են ծավալել համագումարի պատմական որոշումները կենսագործելու, մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունը ամրապնդելու, ժողովրդի կենսամակարդակն անշեղորեն բարձրացնելու համար:*

*Համագումարի կանխագծումները կյանքի կոչելու ճանապարհին սովետական ժողովրդի համար պատմական նոր ուղեցույց դարձան ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան, 1982 թվականի մայիսյան պլենումների որոշումները և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած դրույթներն ու եզրահանգումները:*

*Տասնմեկերորդ հնգամյակի պլանների կատարման համար մեր երկրում ծավալված համաժողովրդական պայքարին ակտիվորեն մասնակցում են Սովետական Հայաստանի և նրա մայրաքաղաքի աշխատավորները: Ինչպես հանրապետության, այնպես էլ Երևանի աշխատավորությունը 10-րդ հնգամյակի բոլոր տարիները նշանավորեցին համամիութենական սոցիալիստական մրցությունում ձեռք բերած ակնառու հաջողություններով և այժմ լի են 11-րդ հնգամյակը ևս կարմրադրոշ դարձնելու վճռականությամբ: Դրա վառ ապացույցն այն է, որ հանրապետությունը և նրա մայրաքաղաքը ընթացիկ հնգամյակի ելակետային տարում ևս հաղթող ճանաչվեցին համամիութենական սոցիալիստական մրցության մեջ՝ նորից արժանանալով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Ձեռք բերվածը Հայաստանի կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի անդուլ աշխատանքի, ձեռնարկած կազմակերպական ու քաղաքական արդյունավետ միջոցառումների արգասիք է, մեր աշխատավորների հերոսական գործունեության արդյունք:*

*Տասնմեկերորդ հնգամյակում և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում հանրապետության առջև ծառացած խնդիրների լուծման գործում իր ուրույն դերն ունի Երևանի կուսակցական կազմակերպությունը: Մայրաքաղաքից պետք է օրինակ վերցնեն, նրան հավասարվեն և միաժամանակ նույն չափով էլ մայրաքաղաքը պետք է վերցնի այն ամեն լավը, որ ծնունդ է առնում հանրապետության մյուս քաղաքներում ու շրջաններում, ընթանա կոմունիստական շինարարության ավանգարդում: Այն բանից, թե ինչպես և ինչ*

որոնք պետք է լուծվեն 1982 թվականին և հետագա տարիներին։ Ելույթում մատնանշվեցին գոյություն ունեցող թերությունների վերացման ուղիները, սահմանվեցին կուսակցական կազմակերպությունների խնդիրները ժողովրդական տնտեսության ղեկավարման մակարդակի բարձրացման, պլանների կատարմանը աշխատավորների մոբիլիզացման, տնտեսական ողջ աշխատանքի կատարելագործման ասպարեզում։

Քաղկոմը, շրջկոմները մշակել և իրականացնում են կոնկրետ միջոցառումներ մեր աշխատանքում տեղ գտած այն թերությունները վերացնելու համար, որոնց մասին խոսվեց ՀԿԿ Կենտկոմի պլենումում։

Մեզ խիստ անհանգստացնում է այն, որ քաղաքի առանձին արդյունաբերական ձեռնարկություններ չեն կատարում պլանային առաջադրանքները։ 1981 թվականին 7 արդյունաբերական ձեռնարկություններ և միավորումներ չկատարեցին արտադրանքի ծավալի և իրացման, իսկ 13-ը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները։ Գործերի վիճակը չի բարելավվել նաև այս տարի։ Ընթացիկ տարվա 8 ամիսների պլանը ապրանքային արտադրանքի և իրացման գծով չեն կատարել 11 ձեռնարկություններ, իսկ աշխատանքի արտադրողականության գծով՝ 25։

Առանձին ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները անհրաժեշտ հետևություն չեն արել իրենց հասցեին արված քննադատությունից, չեն մոբիլիզացրել կոլեկտիվների ուժերը պլանային առաջադրանքների անթերի կատարման համար, ժամանակին չեն վճռել արտադրությունում ծագած հարցերն ու պրոբլեմները։ Կուսակցության շրջանային կոմիտեները, իրենց հերթին, ոչ բավարար հետևողականությամբ և նպատակասլացությամբ են զբաղվել պետական ու պլանային կարգապահության ամրապնդման, աշխատանքի վերջնական արդյունքների համար տնտեսական կադրերի պատասխանատվության բարձրացման հարցերով։

Չնայած քաղաքի արդյունաբերությունը որոշակի հաջողություններ ունի արտադրանքի որակի բարձրացման գործում, սակայն հարկ է նշել, որ արված է դեռ ոչ ամեն բան, որպեսզի արտադրանքի որակի անշեղ բարձրացման մասին կուսակցության պահանջները դառնան գլխավորը յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության կազմակերպչական ու քաղաքական գործունեության մեջ։ Անհանգստացնող է այն փաստը, որ քաղաքի մի շարք ձեռնարկություններ կրճատել են որակի բարձր կարգով ատեստավորված արտադրանքի թողարկումը։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում, անցյալ տարվա համեմատությամբ, պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը իջեցրել են Լենինյան շրջանի 12, Շահումյանի շրջանի 5 ձեռնարկություններ և 3-ական ձեռնարկություն Օրջոնիկիձեի, Սովետական, Սպանդարյանի և 26 կոմիսարների շրջաններից։

Ինչպես ՍՄԿԿ XXVI, այնպես էլ ՀԿԿ XXVII համագումարները սրությամբ դրեցին ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման, դրանց նկատմամբ ազգաբնակչության պահանջարկի առավել լրիվ ապահովման հարցը։ Երևանում տեղակայված են արդյունաբերության «Բ» խմբի մեծ թվով ձեռնարկություններ, որոնց տեսակարար կշիռը արտադրության ընդհանուր ծավալում զգալի տոկոս է կազմում։ Ժողովրդական սպառման տասնյակ միլիոնավոր ռուբլու արտադրանք են թողարկում մեքենաշինության, ծանր արդյունաբերության և այլ ճյուղերի գործարանները։ Սակայն քաղաքի միութենական ենթակայության ձեռնարկությունների կողմից բնակչության համար թողարկվող ապրանքները դեռևս շատ քիչ են։ «Ա» խմբի 59 ձեռնարկություններից միայն 33-ն են թողարկում կուլտուր-կենցաղային նշանակության ապրանքներ, ընդ որում դրանց գերակշռող մասը չի համապատասխանում արտադրության պրոֆիլին։

Ներկայումս կուսակցության քաղաքային կոմիտեն, շրջկոմներն ու ըսկզբնական կուսկազմակերպությունները վճռական պայքար են տանում այն բանին հասնելու համար, որպեսզի առանց բացառության բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները թողարկեն իրենց արտադրության հիմնական պրոֆիլին համապատասխանող, տեխնիկական ու գեղագիտական բարձր մա-



կարդակ ունեցող, բնակչության պահանջարկը բավարարող անհրաժեշտ քանակությամբ ժողովրդական սպառման ապրանքներ։

Մենք մեծ անելիքներ ունենք խնայողության ռեժիմի արմատավորման, բոլոր տեսակի ռեսուրսների արդյունավետ օգտագործման ասպարեզում։ Համարելով այդ խնդիրը որպես հանգուցային, կուսակցության քաղաքային կոմիտեն, քաղսովետի գործկոմի հետ միասին, այս տարվա փետրվարին որոշում ընդունեցին «Արտադրության նոր ռեզերվների հայտնաբերման, հումքային, վառելիքաէներգետիկ և նյութական այլ ռեսուրսների տնտեսման և ռացիոնալ օգտագործման նպատակով քաղաքային ստուգատես-մրցույթ հայտարարելու մասին»։ Այդ որոշման հիմքում կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ քաղաքի աշխատավորական կոլեկտիվների ծավալած լայն շարժումն է խնայողության համար, որի շնորհիվ 1981 թ. տնտեսվել են 8,5 հազար տոննա մետաղ, 28 հազար տոննա պայմանական վառելիք, ավելի քան 65 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, մեծ քանակությամբ հումքի ու նյութերի այլ տեսակներ։

Դրա հետ մեկտեղ կուսակցության շրջկոմները, ձեռնարկությունների սկզբնական կազմակերպությունները պետք է կատարելագործեն քաղաքական և կազմակերպչական աշխատանքի ձևերն ու մեթոդները՝ խնայողության ռեժիմի ուժեղացման ստուգատես-մրցույթը բոլոր աշխատանքային կոլեկտիվներում բարձր մակարդակով կազմակերպելու նպատակով։

Լուրջ թերություններ ու բացթողումներ կան տրանսպորտային ձեռնարկությունների աշխատանքում, որոնց նկատմամբ կուսակցական ղեկավարման մակարդակը լրիվ չափով չի համապատասխանում քաղաքի արտադրողական ուժերի ինտենսիվ զարգացման պահանջներին։

Լավ չեն մեզ մոտ գործերը կապիտալ շինարարության ասպարեզում, այդ բնագավառի ղեկավարման ուղղությամբ մեր աշխատանքն իրավացիորեն սուր քննադատության ենթարկվեց ՀԿԿ Կենտկոմի այս տարվա ապրիլյան պլենումում։ Մեզ դեռ չի հաջողվել հասնել նրան, որ լրիվ իրացվեն պետության հատկացրած միջոցները և կառույցները շարք մտնեն ժամանակին։

1981 թվականին կապիտալ ներդրումների լիմիտը օգտագործվել է 95,2 տոկոսով, շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարվել է 97,5 տոկոսով, հիմնական ֆոնդերինը՝ 80,5 տոկոսով։ 88 օբյեկտներում չի կատարվել հզորությունների և օբյեկտների գործարկման պլանը։ Շուրջ 3 տոկոսով թերակատարվել է բնակարանային շինարարության առաջադրանքը։

Ավելի վատ է դրությունը այս տարի։ Անցած 6 ամիսների ընթացքում կապիտալ ներդրումների պլանը կատարվել է 92,7 տոկոսով, հիմնական ֆոնդերինը՝ 74,7 տոկոսով, չեն կատարվել բնակելի և սոցիալական այլ օբյեկտների շինարարության հիմնական ցուցանիշները։ Անցած 6 ամիսների կապալային աշխատանքները չեն կատարել շինմոնտաժային «Երևանշին» արտադրական միավորումը, «Երքիմշին», «Հայգունմետշին» տրեստները և այլն։

Ետ մնալը կազմակերպչական թույլ աշխատանքի, կատարողական, պետական ու պլանային կարգապահության ցածր մակարդակի հետևանք է, աշխատանքի ոչ ճիշտ կազմակերպման հետևանք։ Շինարարական արտադրության բոլոր օղակներում դեռևս թույլ են ներդրվում գիտության և տեխնիկայի նվաճումները, անբավարար է իրականացվում ինդուստրացումը, չի բարձրացվում աշխատանքի արտադրողականությունը։ Խիստ դանդաղ են կատարելագործվում շինարարական արտադրության կազմակերպումը, ինժեներական նախապատրաստումը։ Ամեն տեղ չէ, որ կազմվում են տեխնոլոգիական քարտեր, արտադրության կազմակերպման նախագծեր և աշխատանքների գրաֆիկներ։

Առայժմ անբավարար է արտադրատեխնոլոգիական կոմպլեկտավորման և դիսպետչերական ծառայությունների աշխատանքի կազմակերպումը, չի ապահովվում շաբաթական և օրական պլանավորման մեթոդի ներդրումը։

Այս ամենի հետևանքով քաղաքի կառույցներում առկա են 15—20 հազար խոր. մ ընդհանուր ծավալով չմոնտաժված կոնստրուկցիաներ, իսկ սա հանգեցնում է ոչ միայն ծավալային ցուցանիշների իջեցմանը, այլև որոշ

բարձր պահանջարկ ունեցող նյութերի (մետաղ, ցեմենտ) երկար ժամանակով սառեցմանը։ Չի գոհացնում շինարարական աշխատանքների մեքենայացման ուղղությամբ տարվող աշխատանքը։ Նկատվում է շինարարական մեխանիզմների օգտագործման գործակցի նվազում։

Անթույլատրելի է այն փաստը, որ այսօր էլ ձեռքով է կատարվում սվաղային աշխատանքների զգալի ծավալը, այն դեպքում, երբ այժմ արդեն նման աշխատանքների համար ծախսվող ժամանակն ու աշխատուժը խիստ լիմիտավորված են։ Ավելացնենք, որ մեր հանրապետությունում 1 մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներում սվաղային աշխատանքներին ընկնող ծավալը 5 անգամ բարձր է միութենական միջինից։

Քաղաքի շինմոնտաժային կազմակերպություններում դեռևս բավարար ուշադրություն չի դարձվում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար կարևոր նշանակություն ունեցող այնպիսի գործոնի վրա, ինչպիսին է բրիգադային տնտհաշվարկի մեթոդը։ Շատ տեղերում աշխատանքի կազմակերպման այս առաջավոր ձևը կրում է ձևական բնույթ, աշխատանքային պայմանագրերը ժամանակին չեն կնքվում, պահանջվող կիրառում չի գտել այս բրիգադների աշխատանքների տարեկան պլանավորումը, որը նրանց ռիթմիկ աշխատանքի գրավականն է, հաճախակի են նրանց նյութերով ու մեխանիզմներով ապահովելու ժամկետների խախտումներն ու խափանումները։ Տնտհաշվարկային բրիգադներին տրվող աշխատանքի ճակատը կազմում է ընդհանուր շինարարության կամ օբյեկտի աննշան մասը միայն։

Որպես ընդհանուր թերություն, պետք է նշել տնտհաշվարկային բրիգադների աշխատանքում գլխավոր և ենթակապալառու կազմակերպությունների գործունեության կոորդինացման բացակայությունը։ Դրա հետևանքով աշխատանքի արտադրողականության պլանը 1981 թ. կատարվել է 98 տոկոսով, իսկ 1982 թ. առաջին եռամսյակում՝ 98,1 տոկոսով։

Շինարարական արտադրությունում տեղ գտած թերությունները, աշխատողների կենցաղային և աշխատանքային պայմանների բարելավման ուղղությամբ տարվող թույլ աշխատանքը հանգեցրել է այն բանին, որ շինմոնտաժային կազմակերպություններում այսօր զգացվում է բանվորական ուժի պակաս։ Կադրերի հոսունությունը անցած տարի կազմել է 23 տոկոս։

Չհանելով պատասխանատվությունը՝ շինմոնտաժային կազմակերպություններից, հարկ է նշել, որ պլանների կատարումը ձախողելու մեղքի զգալի մասը ընկնում է պատվիրատուների վրա։ Տեղ են գտել պլանները կազմելու և ֆինանսավորումը բացելու ժամկետների խախտումներ, պատվիրատուի կողմից մոնտաժման համար տրվելիք սարքավորումների և նյութերի մատակարարումը ուշացնելու և ձախողելու, շինարարության ընթացքում նախագծային փաստաթղթերում փոփոխություններ կատարելու դեպքեր։

Չնայած վերջին ժամանակներս մի շարք միջոցներ են ձեռնարկվել բարելավելու շինարարության որակը, այս բնագավառում արդյունքները դեռևս գոհացուցիչ չեն։ Տեղ են գտել շինարարության տեխնոլոգիայի, կոնստրուկցիաների տարածական չափերի, նրանց նախագծային ամրության խախտման փաստեր։ Հատկապես անբավարար են կատարվում հարդարման աշխատանքները։ Առանց այն էլ շինարարական ինդուստրիայի ձեռնարկություններում պատրաստած ցածրորակ ատաղձագործական արտադրանքը տեղադրվում է առանց համապատասխան հարմարեցման։ Նորմաների և տեխնիկական պայմանների կոպիտ խախտումներով են կատարվում ներկման, հատակների պատրաստման, ապակեպատման, վերելակների, էլեկտրամատակարարման և սանտեխնիկայի հանգույցների մոնտաժի աշխատանքները։

Վերլուծությունը ցույց է տալիս, որ թերությունների մեծ մասը հետևանք է շինարարական նորմաների և կանոնների պահանջների խախտման, նախագծային շեղումների, այսինքն բնորոշվում է այնպիսի գործոններով, որոնք կախված են շինարարական կազմակերպությունների անմիջական գործունեության արդյունքներից։

Հետևանքը լինում է այն, որ նորաբնակները ստիպված են նոր բնակարանները կարգի բերել, նորոգել, որը պատճառում է ոչ միայն նյութական,



այլև բարոյական զգալի վնասներ։ Ավելին, հանձնվող օբյեկտների արտաքին կոմունիկացիաների ուշ միացումը զգալի ժամանակով հետաձգում է դրանց բնակեցումը։

Լուրջ մտահոգության տեղիք է տալիս բնակարանային-քաղաքացիական շինարարության վիճակը՝ ինչպես քաղաքի կենտրոնի կառուցապատման առումով, այնպես էլ քաղաքաշինական, ծավալապլանային և ճարտարապետական կոմպոզիցիոն խնդիրները արդի մակարդակով լուծելու տեսանկյունից։ Բանն այն է, որ գործող տիպային նախագծերի սահմանափակ տեսականու պատճառով քաղաքի կառուցումը ներկայումս տարվում է փաստորեն ընդամենը 4 տիպային տներով, որոնց ճարտարապետությունը, արտաքին տեսքը ոչ մի կերպ չեն կարող բավարարել ժամանակակից քաղաքի, առավել ևս մայրաքաղաքի կառուցապատմանը ներկայացվող պահանջները։ Էլ չենք խոսում այն մասին, որ այդպիսի տներ կառուցել քաղաքի կենտրոնում, կնշանակի լուրջ սխալ թույլ տալ։

Այժմ միջոցներ են ձեռնարկվում քաղաքի կենտրոնի վերակառուցման գործը արագացնելու ուղղությամբ, վերացվում են այդտեղ եղած թերավարտ լուծումները, միկրոշրջապատը լրացվում է անհատական նախագծերով։ Դրանով կվերացվեն ոչ միայն խարխուլ և վթարային տները, այսինքն՝ կբարելավվեն նրանցում բնակվող քաղաքացիների բնակարանային պայմանները, այլև կավարտվի քաղաքի առանձին ճարտարապետական անսամբլների, նրա փողոցների շինարարությունը, կմեծանան կանաչապատ տարածությունները, զգալիորեն կբարելավվի ինժեներական կառուցվածքների վիճակը։

Շրջակա միջավայրի վիճակի բարելավումը այսօր կարևորագույն խնդիր է։ Թեպետ վերջին տարիներս այս ասպարեզում մեծ աշխատանք է տարվել, ջրամբարների և մթնոլորտային օդի աղտոտվածության մակարդակը դեռևս մնում է բարձր։ Շրջակա միջավայրի պահպանության համար արդյունաբերական ձեռնարկությունների և կազմակերպությունների մշակած միջոցառումները շատ դեպքերում կատարվում են ոչ լրիվ, հաճախ խախտվում են սահմանված ժամկետները։ Քաղաքի 35 ձեռնարկություններ, որոնք լրջորեն աղտոտում են շրջակա միջավայրը, թերի են կահավորված մաքրման սարքավորումներով, իսկ եղածներն էլ օգտագործվում են ոչ արդյունավետ կամ էլ անսարք են։

Առաջնորդվելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումներով, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում և աշխատություններում պարունակված դրույթներով և եզրահանգումներով, կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները հետևողականորեն ուժեղացնում են քաղաքական ներգործությունը աշխատավորական կոլեկտիվներում։

Գաղափարախոսական գործունեության գլխավոր բովանդակությունը դարձել է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների և նյութերի պրոպագանդումը, աշխատավորների լայն շրջաններում կոմունիստական համոզվածության ձևավորումը։

Քաղուսուցման դպրոցներում և սեմինարներում խորությամբ ուսումնասիրվում են ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, մարքս-լենինյան ուսմունքի հրատապ պրոբլեմները, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի, տնտեսման ու խնայողության, առաջավոր փորձի հարցերը։

Ընդլայնվում է բոլոր օղակների ղեկավար կադրերի մասնակցությունը դաստիարակչական աշխատանքի ոլորտում։ Շատ կոլեկտիվներում կոմունիստական դաստիարակության կազմակերպումը տարվում է հեռանկարային պլանների հիման վրա, որոնք լիովին բխում են սոցիալ-տնտեսական զարգացման պլաններից։ Ավելի մեծ ուշադրություն է հատկացվում գաղափարական կադրերի տեսական և մեթոդական պատրաստվածությանը։ Կատարելագործվում է կուսակցական կոմիտեների գաղափարական հանձնաժողովների աշխատանքի կազմակերպումը, որոնք օգնում են միավորել և կոորդինացնել կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների, տնտեսական







ջանքերը հիմնականում պետք է ուղղվեն կատարման կազմակերպման նպատակին։ Դա նշանակալի չափով կբարձրացնի կուսակցական աշխատանքի արդյունավետությունը։

ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված հանդիսությունների նախապատրաստությունը դարձել է քաղաքի կուսակցական կազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկը։ Այն նոր, հզոր խթան է հաղորդում մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվության բարձրացմանը, սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով նրանց դաստիարակմանը, 1982 թվականի և ամբողջ 11-րդ հնգամյակի պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման նպատակով աշխատավորության ջանքերի մոբիլիզացմանը։

Մենք լուրջ և գործնական անելիքներ ունենք ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում ընդունված պարենային ծրագրի իրականացման ասպարեզում։ Կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ուղեցույց ունենալով պլենումի որոշումն ու ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ առաջ քաշված դրույթներն ու եզրահանգումները, ակտիվ գործունեություն են ծավալել քաղաքի արդյունաբերական և գիտատեխնիկական կարողություններն ու հնարավորությունները ամբողջությամբ գյուղատնտեսությանը ցույց տրվող օգնության ուժեղացմանը նպատակաուղղելու, գիտության և տեխնիկայի նվաճումները գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման նպատակով ավելի լրիվ օգտագործելու, որակյալ կադրեր պատրաստելու, գյուղատնտեսական մթերքներ արտադրող և վերամշակող ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետությունը ըստ ամենայնի բարձրացնելու ուղղությամբ։

Երևանի կուսակցական կազմակերպությունը, բոլոր աշխատավորները լի են վճռականությամբ և կանեն ամեն ինչ ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները իրագործելու, 11-րդ հնգամյակում և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում մեր առջև կանգնած բարդ ու պատասխանատու խնդիրները անթերի ու մինչև վերջ կատարելու համար։

---

# ՍՄԿԿ-Ն ՍՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր, ՌՍՖՍՀ գիտության
վաստակավոր գործիչ

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ Հանրապետությունների
Միության կազմավորման 60-րդ տարեդարձի մասին»
ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ համակողմանիորեն բնութագրված են աշխար-
հում առաջին սոցիալիստական բազմազգ պետության էությունը, նոր հասա-
րակության ստեղծման բոլոր բնագավառներում մեր մեծ հայրենիքի բոլոր ազ-
գությունների աշխատավորների միացյալ ջանքերով ձեռք բերված հիանալի
հաջողությունները։ «Իր ուժերին վստահ, լավատեսությամբ համակված սո-
վետական ժողովուրդն ընթանում է Լենինի կուսակցության նշած ուղիով,—
ասված է այդ որոշման մեջ։— Կասկած չկա, որ ՍՄԿԿ XXVI համագումարի
սահմանած կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ կլուծ-
վեն։ Դրա գրավականը ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ համախմբվածությունն
է, նրանց համերաշխ համատեղ աշխատանքը հանուն այդ մեծ նպատակի»։
ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները կուսակցությանն ու ողջ սովե-
տական ժողովրդին զինեցին հասուն սոցիալիստական հասարակության հե-
տագա կատարելագործման ու զարգացման, կոմունիզմին նրա աստիճանական
անցման գիտականորեն հիմնավորված կոնկրետ ծրագրով։ Տասնմեկերորդ
հնգամյակի և ամբողջ 80-ական թվականների համար համագումարի առաջա-
դրած վիթխարի խնդիրների հաջող լուծման կարևորագույն պայմանը սովե-
տական բազմազգ պետության՝ ՍՍՀ Միության հետագա կատարելագործումն
ու ամրապնդումն է։
Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը լենին-
յան գաղափարների և պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի
սկզբունքների վրա մարմնացումն է։ Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարու-
թյամբ ստեղծված ՍՍՀ Միությունը բազմազգ պետության նոր տիպ է, պե-
տություն, որտեղ կամավոր և իրավահավասար հիմունքներով եղբայրական
միասնական ընտանիքում միավորվել են ավելի քան հարյուր սոցիալիստական
ազգեր ու ազգություններ։
ՍՍՀ Միության վաթսունամյա փորձը անվիճելիորեն վկայում է, որ սո-
վետական բազմազգ պետությունը սովետական ժողովրդի և նրա ավանգարդի՝
կոմունիստական կուսակցության գլխավոր կռվանն է կոմունիզմի կառուց-
ման գործում։ ՍՍՀ Միության առկայությունը կարևորագույն և վճռական նշա-
նակություն ունեցավ ազգային հարցի հաջող լուծման, երկրի ինդուստրացման
իրականացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական հեղա-
փոխության ու սոցիալիզմի կառուցման, գերմանաֆաշիստական զավթիչներից
մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության և հիտլերյան Գերմանիայի

դեր է խաղացել նաև ՍՍՀ Միության կազմավորման գործում, մյուս բոլոր ժողովուրդներին անշահախնդիր եղբայրական օգնություն ցույց տվել նրանց ազգային սովետական պետականության ստեղծման ու զարգացման, մի շարք ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական զարգացման փաստացի հետամնացության վերացման համար։ «Հենց ռուս ժողովուրդն ավելի քան մեկուկես դար առաջ, մեր ժողովրդի ողբերգական պահին, եղբայրական օգնության ձեռք մեկնեց և դուրս բերեց փրկության ափ, պայծառ ապագայի համար համատեղ պայքարի ճանապարհ,— ՍՄԿԿ XXVI համագումարում արտասանած իր ճառում ասաց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։— ...Ռուս ժողովրդի մեծ, ազնիվ գործերը, իսկական ինտերնացիոնալիզմը մեզ համար, սովետական բոլոր ժողովուրդների համար ծառայել և ծառայում են որպես ոգեշնչող օրինակ։ Ռուս մեծ ժողովրդի, սովետական երկրի բոլոր ժողովուրդների հետ եղբայրական բարեկամությունը մեր բարոյաքաղաքական և սոցիալական անգին հարստությունն է։ Եվ մենք այդ բարեկամությունը կպահենք դարերով»։

Կուսակցության XXVI համագումարի առաջադրած՝ մեր երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրները վկայում են, թե տարեցտարի ինչպիսի վիթխարի չափերով են աճում սովետական բազմազգ պետության գործունեության ծավալն ու մասշտաբները։ Որպեսզի այն հաջողությամբ կատարի կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի գլխավոր կռվանի իր պատմական դերը, անհրաժեշտ է մշտապես կատարելագործել և ամրապնդել ՍՍՀ Միությունը, սովետական համաժողովրդական բազմազգ պետության ողջ սիստեմը։ Այս գործում անխոնջ հոգատարություն ու գործունեություն են ծավալում կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, քաղբյուրոն ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ։

ՍՍՀ Միության ամրապնդումը, սովետական ազգային պետության ողջ սիստեմի կատարելագործումն իրենց հերթին կարևորագույն պայման են մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների հետագա բարգաճման ու աստիճանական մերձեցման, կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի ստեղծագործական ակտիվության հետագա ամրապնդման համար։

Կոմունիզմի ուղին հարթ, առանց խոչընդոտների և առանց հակասությունների չէ։ Ձխոսելով արդեն արտաքին քաղաքական գործոնների մասին, մի շարք իմպերիալիստական պետությունների, ամենից առաջ ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանների թշնամական, հակասովետական, հակակոմունիստական քաղաքականության մասին, բուն մեր հասարակության ներսում ևս գոյություն ունեն հակասություններ։ Սակայն այդ հակասությունները հակամարտ բնույթի չեն, դրանք, ինչպես նաև ամեն տեսակի դժվարությունններ, հաղթահարվում են կոմունիստական շինարարության ընթացքում։ Այդպիսի հակասություններից են առանձին սովետական մարդկանց գիտակցության մեջ ու վարքագծում առկա հնի վերապրուկները։ Դրանցից են նացիոնալիզմի և շովինիզմի վերապրուկները, որոնք խիստ հակասության մեջ են մեր ողջ սոցիալիստական իրականության, սովետական ապրելակերպի հետ։ Կուսակցությունն ամենօրյա հետևողական աշխատանք է տանում՝ հաղթահարելու այդ վերապրուկները, աշխատավորներին դաստիարակելու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով։ «Մեր երկրում հարգվում են ազգային զգացմունքները, յուրաքանչյուր մարդու ազգային արժանապատվությունը,— նշված է կուսակցության XXVI համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ։— ՍՄԿԿ-ն պայքարել է և միշտ էլ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի էությանը խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են շովինիզմը կամ նացիոնալիզմը, ամեն տեսակ նացիոնալիստական խեղումների դեմ, լինի դա, ասենք, հակասեմիտիզմ թե սիոնիզմ։

Մենք դեմ ենք այն միտումներին, որոնք նպատակ ունեն արհեստականորեն վերացնել ազգային առանձնահատկությունները։ Բայց մենք նույնքան էլ անթույլատրելի ենք համարում դրանց արհեստական ուռճացումը։ Կուսակցության սրբազան պարտքն է՝ աշխատավորներին դաստիարակել սովետական



հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացմունքի ոգով» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 92)։

Կուսակցությունը վճռականորեն դատապարտեց նաև առանձին հեղինակների հայացքները սովետական հանրապետությունների «ապաազգայնացման» և մոտ հեռանկարում սովետական ֆեդերացիան ունիտար պետություն դարձնելու մասին։ Կուսակցության, մասնավորապես XXVI համագումարի որոշումներում շեշտվում է սովետական բազմազգ համաժողովրդական պետության՝ ՍՍՀ Միության, հետագա ամրապնդման անհրաժեշտությունը։

Նոր հասարակության կառուցման գործում սովետական մարդկանց բոլոր հաջողությունների գրավականը կոմունիզմի հունով ընթանալու ճշմարտացիության մեջ է, նրանց խոր համոզվածությունն է, անսահման նվիրվածությունն ու սերը հայրենիքի նկատմամբ, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի անմար զգացումը։ Սովետական հասարակական ու քաղաքական կարգը տոգորված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների եղբայրական բարեկամության գաղափարներով, մեր ողջ մոլորակում կայուն խաղաղություն հաստատելու ձգտմամբ։ Սոցիալիզմն անբաժանելի է խաղաղությունից։ Պատերազմի սպառնալիքը բխում է ոչ թե Սովետական Միությունից, ինչպես զրպարտում է իմպերիալիստական պրոպագանդան, այլ իմպերիալիստական երկրների ռեակցիոն, ագրեսիվ շրջաններից, ամենից առաջ՝ ԱՄՆ-ից։ Սպառազինությունների մրցավազքի վիթխարի եկամուտներից, նորանոր տեսակի միջուկային, քիմիական, բակտերիոլոգիական և մասսայական բնաջընջման զենքի այլ տեսակների ստեղծումից հարստացող ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ընչաքաղց շահեր՝ ահա թե որն է պատերազմի սպառնալիքի աղբյուրը։ Բայց դրանց ճանապարհին զորեղ պատնեշի պես կանգնած է համայն առաջադեմ մարդկությունը, որի առաջին շարքերում հանդես են գալիս ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ընկերակցության երկրների ժողովուրդները։

Սովետական Միությունը հաստատուն և աներեր կանգնած է խաղաղության պաշտպանության դիրքերում։ Չկա՛ ավելի կարևոր խնդիր, քան խաղաղության պահպանումը համայն աշխարհում։

Մոսկվա

---

քրոնից խրոխտ հնչում է Սկրիպնիկի ձայնը, իսկ հոկտեմբերին նա Պետրո-
գրադի զինված ապստամբների ղեկավարներից մեկն էր, համառուսաստանյան
Կենտգործկոմի և բոլշևիկների ղեկավար կենտրոնի անդամ։ Տաք վիճաբանու-
թյուններ էին բորբոքվում Ուկրաինայի պետական կառուցվածքի հարցի շուր-
ջը։ Ոմանք առարկում էին Ուկրաինան ինքնուրույն հանրապետություն հռչա-
կելու մասին Լենինի ծրագրին, դեմ էին նաև Ուկրաինայի կոմունիստական
կուսակցության կազմակերպմանը։ Սկրիպնիկը մեկնում է Ուկրաինա, դառ-
նում ուկրաինական սովետական պետության ղեկավարը։ Նա համարձակ անց-
կացնում է Լենինի դիրեկտիվը Ուկրաինայի կոմունիստական կուսակցության
կազմավորման մասին, գլխավորում նրա առաջին համագումարը, որտեղ հան-
դես է գալիս զեկուցումով Ուկրաինական ՍՍՀ-ի և Ուկրաինայի կոմկուսի խըն-
դիրների մասին՝ քայլ առ քայլ նախապատրաստելով Ուկրաինական ՍՍՀ-ի
դաշինքը սովետական մյուս հանրապետությունների հետ։ Ուկրաինայում հան-
րապետությունների միության կազմավորման համար ծավալվող շարժման
ակտիվ կազմակերպիչներից էին նաև Վ. Պ. Զատոնսկին, Դ. Զ. Մանուիլսկին,
Գ. Ի. Պետրովսկին և ուրիշներ։
Այդ պատմական մեծ խնդրի համար անձնվիրաբար գործել են Սերգո Օր-
ջոնիկիձեն՝ ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյի քարտուղարը և Անդրկովկասի կոմու-
նիստների ճանաչված ղեկավարը, Սերգեյ Միրոնովիչ Կիրովը՝ 1920—1925 թթ.
Ադրբեջանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղա-
րը, Ալեքսանդր Մյասնիկյանը, որը 1917—1918 թթ. գլխավորել է Արևմտյան
մարզի և ռազմաճակատի բոլշևիկների պայքարը հեղափոխության հաղթանա-
կի համար, 1918—1919 թթ. եղել է Բելոռուսական ՍՍՀ-ի և Բելոռուսիայի կո-
մունիստական կուսակցության կազմավորման պատմական գործի ղեկավարը,
1919—1920 թթ. կուսակցության Մոսկվայի կոմիտեի առաջին քարտուղարն
էր, իսկ 1921—25 թվականներին գործել է նախ՝ որպես Հայկական ՍՍՀ-ի
ժողկոմխորհի նախագահ, իսկ հետո՝ կուսակցության Անդրկովկասյան երկրա-
յին կոմիտեի քարտուղար, և ուրիշներ։ Լենինյան կոփվածքի գործիչների այդ
եռյակը Անդրկովկասի կոմունիստների ինտերնացիոնալ ոգու մարմնացումն
էր։ Նրանք էլ հանդիսացան նախ Անդրկովկասյան Ֆեդերացիայի կազմակեր-
պիչներ, իսկ ապա նաև Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների
Միության ստեղծման լենինյան գաղափարի ջատագովներ ու նրա կենսա-
գործման համար եռանդուն պայքարողներ։
1922 թվականին վերջնականապես ավարտվեցին քաղաքացիական կռիվ-
ները։ ՌՍՖՍՀ-ն, Ուկրաինական, Բելոռուսական, Ադրբեջանական, Հայկական
և Վրացական անկախ սովետական հանրապետությունների առջև ծառացան
անհետաձգելի խնդիրներ՝ ամրապնդել երկրի պաշտպանությունն արտաքին
վտանգից, ստեղծել դիվանագիտական միասնական ճակատ և անցնել հանրա-
պետությունների ներքին տնտեսական կյանքի սոցիալիստական վերակառուց-
մանը, սոցիալական արմատական վերափոխություններին։ Հանրապետու-
թյունների զարգացման օբյեկտիվ պայմաններն անհրաժեշտություն էին դարձ-
րել նրանց ուժերի համախմբումը։
1920 թվականին, սոցիալիստական հեղափոխության երեք տարիների
փորձն ընդհանրացնելով, Վ. Ի. Լենինը շեշտեց «ամբողջ աշխարհի ռազմական
տեսակետից անհամեմատ ավելի զորեղ իմպերիալիստական պետություննե-
րով շրջապատված սովետական հանրապետությունների գոյությունը պաշտ-
պանելու անհնարինությունն առանց սովետական հանրապետությունների ամե-
նասերտ դաշինքի» (Երկեր, հ. 31, էջ 168), որ «ժամանակակից միջազգային
իրադրության մեջ սովետական հանրապետությունների միությունից բացի
փրկություն չկա կախյալ և թույլ ազգերի համար» (Նույն տեղը, էջ 172)։
Այդպիսի ծրագիր առաջադրելով, Լենինը բացատրում էր. «Մենք ազգերի
կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն
չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմ-
նըված լիներ լիակատար վստահության վրա, եղբայրական միասնության
պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր,
հ. 30, էջ 368)։



Սակայն կուսակցական ու սովետական բոլոր գործիչները չէ, որ ճիշտ
էին ըմբռնում հանրապետությունների փոխհարաբերությունների հետագա
զարգացման լենինյան ծրագիրը։ Նրա իրականացումը պահանջում էր լարված
պայքար և անխոնջ աշխատանք։ Լենինը խնդիր դրեց ստեղծել նոր պետական
կազմավորում՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միու-
թյուն, որի կազմում անկախ սովետական հանրապետությունները միավորվում
են կամավորության և իրավահավասարության հիմունքներով՝ պահպանելով
Միությունից ազատորեն դուրս գալու նրանցից յուրաքանչյուրի իրավունքը։
1922 թ. հոկտեմբերի 6-ին գումարվեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենում, որը
լիովին հավանություն տվեց Վ. Ի. Լենինի առաջարկին և այն ընդունեց որպես
որոշում։ Այդ որոշումը քննարկման դրվեց բոլոր հանրապետությունների կոմ-
կուսների կենտկոմներում, սովետների համագումարներում ու հասարակական
կազմակերպություններում, որոնք միահամուռ հավանություն տվեցին անկախ
հանրապետությունները Միության մեջ միավորելու մասին Կենտկոմի որոշ-
մանը, համապատասխան պայմանագիր կնքելու համար ընտրեցին լիազոր-
ներկայացուցիչներ և Սովետների համամիութենական համագումարի պատ-
գամավորներ։
Սովետների միութենական առաջին, հիմնադիր համագումարը տեղի ունե-
ցավ 1922 թվականի դեկտեմբերի 30-ին, Մոսկվայի մեծ թատրոնում։ Համա-
գումարն ընդունեց «Դեկլարացիա ՍՍՀՄ կազմելու մասին» և «Պայմանագիր
ՍՍՀՄ կազմելու մասին», որոնք հանդիսացան ՍՍՀ Միության ստեղծման հիմ-
նական փաստաթղթերը և դրվեցին նրա սահմանադրության հիմքում։ Այնու-
հետև համագումարն ընտրեց Սովետական Միության բարձրագույն օրենսդիր
մարմին՝ Կենտրոնական գործադիր կոմիտե, որը հետո կազմեց Ժողովրդական
կոմիսարների խորհուրդ, Սովետական Միության առաջին կառավարությունը՝
Վ. Ի. Լենինի նախագահությամբ։
Սովետական Միության պետական իշխանության բարձրագույն օրենսդիր
մարմնի՝ Կենտրոնական գործադիր կոմիտեի առաջին նստաշրջանը ընտրեց
Կենտգործկոմի նախագահներ՝ Միությունը կազմող ամեն մի հանրապետու-
թյունից՝ ՌՍՖՍՀ-ից, Ուկրաինական ՍՍՀ-ից, Բելոռուսական ՍՍՀ-ից և Ան-
դրկովկասի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունից
(Հայաստանը, Վրաստանը և Ադրբեջանը միասին վերցրած), որոնք պետք է
հերթով կամ կոլեգիալ ղեկավարեին Միության բարձրագույն մարմնի գործու-
նեությունը։
1919 թ. Համառուսաստանյան Կենտգործկոմի նախագահ Յա. Մ. Սվերդ-
լովի մահվան օրերին հարց ծագեց նրան արժանի փոխարինող ընտրելու մա-
սին։ Վ. Ի. Լենինի առաջարկությամբ պետական այդ բարձր պոստում ընտր-
վեց Մ. Ի. Կալինինը։ Միխայիլ Իվանովիչ Կալինինը՝ լենինյան տիպի այդ գոր-
ծիչը, անցել էր հեղափոխական պայքարի մեծ դպրոց։ Տվերի նահանգի գյու-
ղացի, Պուտիլովի գործարանի բանվոր, բանտ, աքսոր, 1898-ից ՌՍԴԲԿ ան-
դամ, 1912 թ. Պրագայի կոնֆերանսում ընտրվել էր Կենտկոմի կազմում,
1917-ին գործել հեղափոխության բարիկադների վրա, 1919-ից գլխավորել Հա-
մառուսաստանյան Կենտգործկոմը։ 1922-ին ընտրվելով ՍՍՀՄ Կենտգործկոմի
նախագահ, դարձավ սովետական հասարակարգի բազմաթիվ օրենքների ստեղ-
ծողը։
Մ. Ի. Կալինինը մինչև իր կյանքի վերջն ապրեց և գործեց որպես համա-
միութենական ավագ, իմաստուն խորհրդատու, Լենինի պատգամների փոխան-
ցողը երիտասարդ սերնդին։
ՍՍՀՄ Կենտգործկոմի առաջին նախագահներից մեկն էլ ընտրվեց Գ. Ի.
Պետրովսկին, որը 1905 թվականին եղել է առաջին բանվորական սովետների
կազմակերպողներից մեկը։ 1912 թվականին նա ընտրվել էր Ռուսաստանի պե-
տական դումայի պատգամավոր։ 1917-ին Պետրովսկին հոկտեմբերյան մար-
տերի մեջ էր, այնուհետև նա սովետական առաջին կառավարության ներքին
գործերի ժողովրդական կոմիսարն էր։ Հանրապետությունների Միություն ըս-
տեղծելու ժամանակ Գ. Ի. Պետրովսկին Ուկրաինական ՍՍՀ Կենտգործկոմի

## Պարենային ծրագրի իրականացման համար

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆԺԵՆԵՐԱԿԱՆ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

**Ս. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀՍՍՀ «Գյուղտեխնիկա» պետական
կոմիտեի նախագահ

ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿՈՄՊԼԵՔՍՈՒՄ ծանրակշիռ դեր ունեն «Գյուղտեխնիկայի» համակարգի կազմակերպություններն ու ձեռնարկությունները։ Այդ մասնագիտացված համակարգը, որը ագրոարդյունաբերական կոմպլեքսի ինժեներական ծառայությունն է, իր գործունեությամբ էապես նպաստում է գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացմանը, ապահովում գիտատեխնիկական առաջընթացը, տեխնիկական միջոցների օգտագործման, նորոգման ու սպասարկման առավել արդյունավետ ձևերի ներդրումը, կոլտնտեսություններին ու սովխոզներին նյութատեխնիկական միջոցների մատակարարումը և այլ ծառայությունների կատարումը, որոնք անմիջականորեն առնչվում են դաշտերի բերքատվության և ֆերմաների մթերատվության բարձրացման հետ։

Առաջադրված նոր խնդիրներին համապատասխան, մեր կոմիտեի կոլեգիան մշակել է համակարգի կազմակերպությունների ու ձեռնարկությունների գործունեության կոնկրետ պլան, որը կոչված է ապահովելու ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումների որոշումների կատարումը։ Նախատեսված միջոցառումների իրականացումն արդեն այժմ որոշակիորեն նպաստում է տեխնիկայի նորոգման ու սպասարկման որակի բարելավմանը, մեքենաների ու սարքավորումների տեխնիկական պատրաստականության աստիճանի բարձրացմանը, մեքենաների տեխնիկական սպասարկման գործում մասնագիտացված օղակների լայն կիրառմանը։

Համակարգի ուժերով ու միջոցներով ամենուր կազմակերպվում են մեքենայական ջոկատներ և ապահովվում դրանց ակտիվ մասնակցությունը գյուղատնտեսական աշխատանքին։ Արդեն անցյալ տարի հանրապետության 17 շրջաններում կազմակերպվել էին բերքահավաքի և փոխադրումների մասնագիտացված 33 բրիգադներ։ Հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում արտադրական սպասարկման աշխատանքների ոլորտն ընդլայնելու նպատակով ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ այս տարի ևս 11 շրջաններում կազմակերպվել են 16 այդպիսի բրիգադներ։ Տեխնիկան արդյունավետ օգտագործելու համար ուժեղացվել է ինժեներական հսկողությունը, բրիգադներն ապահովվել են մեխանիզատորական կադրերով, ինչպես նաև կերի կուտակման և բերքահավաքի անհրաժեշտ մեքենաներով ու տեխնիկական միջոցներով։ 1982 թ. օգոստոսի 16-ի դրությամբ հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում մասնագիտաց-



ված բրիգադների միջոցով հավաքվել է 30.000 տոննա խոտ, պատրաստվել են 48.000 տոննա սենաժ և 47.000 տոննա սիլոս։

Բերքահավաքի մասնագիտացված բոլոր 49 բրիգադները համալրված են ժամանակակից գյուղատնտեսական բարդ մեքենաներով և փոխադրական միջոցներով։ Սրանք դեռևս առաջին քայլերն են այն մեծ միջոցառման, որը պետք է ապահովի կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական սպասարկումը։ Առաջիկայում այն ավելի լայն չափեր կստանա։

Խնդիր է դրվում անասնապահական ֆերմաներում բարելավել սարքավորումների տեխնիկական սպասարկման որակը, ընդարձակել ծավալը և լրիվ բավարարել կոլտնտեսությունների ու սովխոզների պահանջները։ Նախատեսվում է բարձրացնել տնտեսությունների տրանսպորտային միջոցների սպասարկման որակը, ընդլայնել հատկապես գյուղատնտեսական մթերքների կենտրոնացված փոխադրումների ծավալը։

Ելնելով պարենային ծրագրի պահանջներից, նախատեսվում է բարելավել նյութատեխնիկական միջոցների նկատմամբ սպառողների պահանջարկի ճիշտ հաշվառումը և պլանավորումը, մեքենաների ու սարքավորումների կոմպլեքս մատակարարումն ու մեքենատրակտորային հավաքակայանների ռացիոնալ կառուցվածքային ձևավորումը, գերնորմատիվային պաշարների նվազեցումը, առկա ռեսուրսների խնայողաբար օգտագործումը, մեծ տեղ տալ տեխնիկայի նախավաճառքային սպասարկմանը և որպես կարգ դրանք կոլտնտեսություններին ու սովխոզներին հասցնել հավաքված և կարգաբերված վիճակում։

Կոնկրետացված են նոր տեխնիկայի, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի, ռացիոնալիզատորների և գյուտարարների առաջարկությունների ներդրման խնդիրները։ Նախատեսված են մի շարք այլ կազմակերպական, տեխնիկական ու տնտեսական միջոցներ, որոնք ուղղված են պարենային ծրագրի հաջող լուծմանը։

Պարենային ծրագրի իրականացումը պահանջում է մեր համակարգի կազմակերպությունների ղեկավարների, բոլոր ինժեներատեխնիկական կադրերի ուժերը, ստեղծագործական եռանդը նպատակամղել տնտեսությունների նկատմամբ պայմանագրային պարտավորությունները ժամանակին կատարելուն, արտադրական հզորությունները, աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսները արդյունավետ օգտագործելուն, կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեության համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելուն, գյուղատնտեսական աշխատանքների արտադրողականությունը բարձրացնելուն, գյուղի սոցիալ-կենցաղային հարցերը հաջողությամբ լուծելուն։ Առանձնակի ուշադրություն է հատկացվում աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործմանը, կադրերի որակավորման բարձրացմանը, սպասարկվող տնտեսությունների ու ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի հետ համաձայնեցված գործունեության ապահովմանը, պետական կարգապահության ըստ ամենայնի ամրապնդմանը։ Այս առումով հատուկ նշանակություն ունի ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումն այն մասին, որ պարենային ծրագիրն առաջադրում է տարբեր ժամկետների խնդիրներ՝ երկարաժամկետ, միջին ժամկետի, շտապ և անհետաձգելի։ Արդեն այս տարի ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների մի մասի իրականացումից պետք է երևա արդյունքը։ Ուստի ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր օղակների առաջնահերթ խնդիրն է ապահովել 1982 թվականի պլանների հաջող կատարումը, կազմակերպված անցկացնել գյուղատնտեսական բոլոր աշխատանքները։

Այժմ գյուղում ավարտվում է ամենապատասխանատու և վճռական ժամանակաշրջանը՝ պայքարը 1982 թվականի բերքի համար։ Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները պայքարում են ստանձնած լարված պլանները և սոցիալիստական պարտավորությունները կատարելու, հացահատիկի, խաղողի, բանջարաբոստանային կուլտուրաների, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի արտադրությունն ավելացնելու, պետությանն ավելի շատ միս, կաթ և այլ մթերքներ հանձնելու համար։ Ամենուրեք կազմակերպչական մեծ աշխատանքներ են տարվում։

Մեր ուշադրության կենտրոնում է բերքահավաքի հաջող ավարտումը։

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունել են հատուկ որոշում «1982 թվականի բերքահավաքը, գյուղատնտեսական մթերքների մթերումները և 1982—1983 թվականների անասունների ձմեռումը հաջող անցկացնելու լրացուցիչ միջոցառումների մասին»։ Համանման որոշում են ընդունել նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը։ Ձեռնարկվում են հրատապ միջոցներ ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի նյութատեխնիկական և աշխատանքային ռեսուրսները մոբիլիզացնելու, բերքահավաքը սեղմ ժամկետներում անցկացնելու, գյուղատնտեսական կուլտուրաների առավելագույն բերքի ապահովման համար։

Հայգյուղտեխպետկոմի համակարգի մոնտաժային կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում անասնապահության արտադրապրոցեսների կոմպլեքս մեքենայացման մակարդակի շեշտակի բարձրացմանը, սահմանված ժամկետներին, համաչափորեն և հնարավորին չափ քիչ ծախսումներով անասնապահական և կերամշակման օբյեկտների մոնտաժմանը, մեքենայացման բնագավառում առաջավոր տեխնոլոգիայի և գիտության նվաճումների ներդրմանը, տեխնիկական սպասարկման և տեխնիկայի արդյունավետ օգտագործման աշխատանքների բարելավմանը։

Անհետաձգելի խնդիր է 1982 թվականին գործարկվող գյուղատնտեսական արտադրական օբյեկտների ժամանակին ու որակով մոնտաժումը, անասնապահական տեխնիկայի, կերարտադրամասերի սարքավորումների ու կեր մշակող ագրեգատների նորոգումը, կարգաբերումը և դրանց մշտական տեխնիկական պատրաստության ապահովումը անասունների ձմեռումը հաջող անցկացնելու համար։ 1982 թվականի առաջին կիսամյակում մեր կազմակերպությունները հիմնականում կատարեցին մոնտաժային ու սպասարկման աշխատանքների պլանները։ Ընթացիկ տարում պլանավորվում են 7,9 մլն ռուբլու մոնտաժային և 1,5 մլն ռուբլու սպասարկման աշխատանքներ։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ այդ առաջադրանքները կգերակատարվեն։ Անասնապահական ու կերամշակման տեխնիկայի մոնտաժման ու արդյունավետ օգտագործման աշխատանքները բավարար հիմքերի վրա են դրված Հրազդանի, Ախուրյանի, Արտաշատի, Էջմիածնի և այլ շրջաններում։ Այդ աշխատանքների որակը դեռևս ցածր է Արթիկում, Կրասնոսելսկում, Սպիտակում և այլ շրջաններում։

Գյուղտեխպետկոմը հանրապետության գյուղմինիստրության հետ միասին դեռևս հունիս ամսին քննարկել է անասնապահական ու կերամշակման տեխնիկայի նախապատրաստման ընթացքը ձմռան սեզոնին և միջոցներ ձեռնարկել աշխատանքներն արագացնելու համար։ 1982 թվականին նորոգման ու շահագործման կարիքների համար ձեռք են բերվել գոմաղբի հեռացման 750 փոխադրիչներ, 49 հազար ավտոխմոցներ, 140 ստացիոնար և շարժական կերաբաշխիչներ, 200 մսուրային սարքավորումներ, 50 կթի ագրեգատներ և այլ տեխնիկա ու պահեստամասեր։

Անհրաժեշտ ենք համարում նշել, որ անասնապահության մեքենայացման մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում ներկա պահանջներին։ Փորձը վկայում է, որ միայն նորակառույց անասնապահական օբյեկտները մեքենայացնելով հնարավոր չէ հասնել ծրագրված մակարդակին։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է առանձնակի ուշադրություն նվիրել գործող անասնաշենքերի վերակառուցմանն ու տեխնիկապես վերազինմանը։ Միության տարբեր հանրապետություններում նշված աշխատանքները կազմում են մոնտաժային աշխատանքների ընդհանուր ծավալի մոտ 40 տոկոսը, իսկ մեր հանրապետությունում այդ նպատակով դեռևս քիչ գործ է արվում։ Կատարվող մոնտաժային աշխատանքների որակը բարձրացնելու նպատակով նախատեսվում է մոնտաժային նախապատրաստվածքների պատրաստման ու հանգույցների հավաքման բոլոր աշխատանքները կենտրոնացնել տեխնիկական սպասարկման կայաններում և Մասիսի մասնագիտացված բաժանմունքում։ Դա հնարավորություն կընձեռի մոնտաժային աշխատանքները փոխադրել ար-



դյունաբերական հիմքի վրա, բարձրացնել արտադրողականությունը և կատարվող աշխատանքների որակը։

Միջոցներ են ձեռնարկվում արմատապես բարելավելու ֆերմաներում ու կերարտադրամասերում տեղադրված տեխնիկայի սպասարկումը։ Այս տարվանից կիրառվում է տեխնիկական սպասարկման աշխատանքների կատարման համար շրջգյուղտեխնիկայի և կոլտնտեսությունների ու սովխոզների փոխհարաբերությունների նոր կարգ, որի ներդրմամբ բարձրանում է գյուղտեխպետկոմի սպասարկող անձնակազմի պատասխանատվությունը անասնապահական տեխնիկայի պատրաստության ու արդյունավետ օգտագործման համար, կրճատվում է ծախսվող պահեստամասերի քանակը։ Մոնտաժային ու սպասարկման աշխատանքների որակը բարձրացնելու նպատակով կազմվել է պլան-գրաֆիկ՝ համակարգի մոնտաժային ու սպասարկման կազմակերպություններում արտադրանքի որակի կառավարման կոմպլեքս սիստեմ ներդնելու համար, այդ աշխատանքները կավարտվեն 1985 թվականին։

Կուսակցությունն ու կառավարությունը գյուղատնտեսական արտադրությանը հատկացնում են նյութական հսկայական միջոցներ։ Դա պահանջում է նաև գյուղատնտեսությանը նյութատեխնիկական միջոցներով մատակարարման ձևերի հետագա կատարելագործում։ Վերջերս միութենական կառավարությունը որոշում է ընդունել զուգահեռ գործող մատակարարող, իրացնող և կոմպլեկտավորող կազմակերպությունների կառուցվածքային փոփոխություններ կատարելու մասին։ Այդ կարևոր միջոցառման իրականացումը հնարավորություն կընձեռի կենտրոնացնելու նյութատեխնիկական ռեսուրսները, պայմաններ կստեղծի ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսում նյութական պաշարների կառավարման միասնական սիստեմի անցնելուն։ Ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի համար կսահմանվի պահանջարկի հաշվառման, բաշխման, ֆոնդերի տեղ հասցնելու, իրացման և մի շարք այլ հարցերի միասնական կարգ։

Համակարգի մատակարարող կազմակերպությունների ուշադրությունն այժմ սևեռվում է գյուղատնտեսության պահանջմունքները նյութատեխնիկական միջոցների նկատմամբ առավելագույն չափով բավարարելու, պայմանագրային պարտավորությունները կատարելու, մեքենաները և սարքավորումները հավաքված և կոմպլեկտավորված վիճակում տնտեսություններին հանձնելու, պահեստամասերի մատակարարումը կատարելագործելու, ֆրանկոտնտեսության մատակարարման պայմանով բեռների կենտրոնացված փոխադրումների ծավալն ընդլայնելու, բազաների խոշորացման և մասնագիտացման, պահեստային օպերացիաների մեքենայացման խնդիրների կենսագործմանը։ Հատկապես լայն զարգացում կստանա բոլոր տիպի մեքենաների կոմպլեքս մատակարարման կազմակերպումը։ Նկատելիորեն պետք է բարելավվի նոր կառուցվող և վերակառուցվող անասնապահական ֆերմաների, համալիրների և գյուղատնտեսական այլ օբյեկտների կոմպլեկտավորումը։

Ակնհայտ է, որ այժմ գյուղատնտեսության պահանջմունքները նյութատեխնիկական միջոցներով լիովին չեն բավարարվում։ Ուստի անհրաժեշտ է առավել խնայողաբար օգտագործել պահեստամասերը, որի համար հարկ է ճիշտ հաշվառել պահեստամասերի, հանգույցների պահանջարկը, շրջանառության մեջ դնել գերնորմատիվային մնացորդները, անցնել պահեստամասերի երաշխավորված մատակարարման, ներդնել նորոգման համար դրանց կոմպլեքս մատակարարման և սպասարկման մյուս առաջավոր ձևերը։

Տնտեսությունները պահեստամասերով ապահովելու գործում կարևոր ռեզերվ է մաշված մասերի վերականգնումը։ Մեր ձեռնարկությունները պարտավորվել են վերականգնել օգտագործվող պահեստամասերի ծավալի ոչ պակաս քան 30 տոկոսը։ 1981 թվականին այն կազմել է 7,3 տոկոս։ Առաջադրանքը հաջողությամբ են կատարում Կամոյի անվան, Սևանի, Արարատի, Գուգարքի, Ղափանի և մի շարք այլ շրջգյուղտեխնիկաները։ Սակայն այդ գործում դեռևս հետ մնացողները քիչ չեն։

Այդ խնդրի ամբողջական լուծման համար, նոր գծերի, տեղամասերի ստեղծման, նոր սարքավորումների տեղադրման հետ միաժամանակ պետք է

վճռել նաև նորոգման ֆոնդերի հատկացման հարցը՝ եղած հզորությունների բեռնվածությունն ապահովելու համար։ Այս հարցերը մեր ծառայությունները դեռևս վերջնականորեն և ամբողջովին չեն լուծել, իսկ շատ տեղերում էլ շարունակվում է առանց հին մասերի հանձնման նոր մասերի բացթողման արատավոր պրակտիկան։

Պարենային ծրագրում առաջադրանք է սահմանվել՝ ապահովել վառելիքի 5 տոկոսի խնայողություն։ Դա պարտավորեցնում է մեզ առաջիկայում ամբողջությամբ ավարտելու կոլտնտեսությունների և սովխոզների նավթային տնտեսությունների սարքավորումների տեխնիկական սպասարկման ընդգրկումը։

Մի շարք շրջաններում սպասարկվում են բոլոր սարքավորումները։ Մինչդեռ այդ գործում թերանում են Ազիզբեկովի, Արթիկի, Վարդենիսի, Ղուկասյանի, Եղեգնաձորի, Թումանյանի, Թալինի շրջգյուղտեխնիկաները։

Նյութական ռեսուրսների նկատմամբ հոգատար վերաբերմունքը, դրանց արդյունավետ ու խնայողաբար օգտագործումը գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածության բարձրացման կարևոր ռեզերվներից են։ Մեր կոմիտեն, գյուղատնտեսական մարմինների հետ համատեղ, իրականացնում է նպատակային ծրագիր՝ գյուղատնտեսության մեջ վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման ու խնայողության նպատակով՝ ի հաշիվ տեխնիկայի օգտագործման բարելավման, ծախսի նորմավորման կատարելագործման։

Նյութատեխնիկական ռեսուրսների արդյունավետ օգտագործումը համաժողովրդական խնդիր է և տնտեսական, կազմակերպական, տեխնոլոգիական և այլ միջոցների հանրագումար։ Կոմիտեում ստեղծված է նյութական միջոցների խնայողաբար ծախսման հատուկ հանձնաժողով, որը գործնական օգնություն է ցույց տալիս տեղերին։ Խնայողաբար օգտագործել այն, ինչ մեր տրամադրության տակ է, կրճատել ծախսերը, կանխել կորուստները՝ նշանակում է խնայել տասնյակ հազարավոր մարդկանց աշխատանքը, նպաստել ապրանքների արտադրության և աշխատանքի ծավալի աճին, բարձրացնել արտադրության արդյունավետությունը։ Ահա այդ կարևոր խնդրի լուծմանն են նպատակամղվել տնտեսավարման մեխանիզմը, բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնությունը։

Կոլտնտեսությունների և սովխոզների մեքենատրակտորային հավաքակայանների բարձրարդյունավետ օգտագործումը, գյուղատնտեսական աշխատանքները ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում անցկացնելը պայմանավորված են տեխնիկայի նորոգման և տեխնիկական սպասարկման բարձր որակով։ Վերջին տարիներին զգալիորեն բարելավվել է նորոգման և տեխնիկական սպասարկման ծառայությունների աշխատանքը։ Ընթացիկ հնգամյակում իրականացվում է նորոգման որակի բարձրացման նպատակային կոմպլեքս ծրագիր, որը նախատեսում է ձեռնարկությունների տեխնիկական հետագա վերազինում, տեխնոլոգիական նոր լուծումների ներդրում, վերահսկման սիստեմի կատարելագործում և մետրոլոգիական ապահովում, կանխագուշակման միջոցների լայն կիրառում։ Նախատեսվում են նաև այլ մշակումների ներդրումներ, որոնք կապահովեն տեխնիկական սպասարկման բարձր որակը։ Հատուկ ուշադրություն է հատկացվում ձեռնարկությունների նեղ տեղերին, ամենից առաջ մեքենաների քանդման-լվացման և ներկման բաժանմունքների տեխնիկական հագեցվածությանը։ Շարունակվում է գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման կուրսը, ներդրվում է նորոգման և տեխսպասարկման ինդուստրիալ տեխնոլոգիա՝ ժամանակակից սարքավորումներով։

Համակարգի ձեռնարկություններն ու կազմակերպություններն իրենց հնարավորությունների նպատակային օգտագործման մեծ փորձ ունեն։ Վերջին երկու հնգամյակներում հանրապետության գյուղտեխնիկայի նորոգող ձեռնարկությունների արտադրական հզորություններն աճել են 35 տոկոսով, համախառն արտադրանքի ծավալը՝ 76,9 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում նորոգող ձեռնարկություններում արտադրական տարածության յուրաքանչյուր



քառակուսի մետրի դիմաց արտադրանքն աճել է 43,8 տոկոսով, իսկ մեկ աշխատողի արտադրանքը՝ 77,3 տոկոսով։ Սակայն գաղտնիք չէ, որ մեզ մոտ դեռևս քիչ չեն եղած հզորությունների ոչ արդյունավետ օգտագործման փաստերը։ Խոսքը վերաբերում է Ազիզբեկովի (49 տոկոս), Ապարանի, Թալինի (60 տոկոս), Եղեգնաձորի (69 տոկոս), Շամշադինի (52 տոկոս) շրջգյուղտեխնիկաներին։ Այս առումով մի շարք տեխնիկական սպասարկման կայաններ, արհեստանոցներ շարունակում են աշխատել իրենց առկա հնարավորություններից ցածր։

Գյուղատնտեսության մեջ ինժեներական սպասարկումը բարելավելու միջոցառումների համակազմում, նյութատեխնիկական ռեսուրսների արդյունավետ օգտագործման հարցում կարևոր տեղ է հատկացվում տնտեսագիտական աշխատանքին։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը կանխանշել է ուղիներ ագրոարդյունաբերական կոմպլեքսում տնտեսական մեխանիզմի կատարելագործման համար։ Դրանք նախատեսում են սպասարկող ոլորտի հետ կոլտնտեսությունների և սովխոզների փոխհարաբերությունների կատարելագործում, տնտհաշվարկի, աշխատանքի բրիգադային ձևի և աշխատանքի խրախուսման տնտեսական լծակների դերի ուժեղացման լայն ներդրում, վերջնական արդյունքների համար նյութական ու բարոյական խրախուսման կիրառում։ Արտադրության տարբեր ոլորտներում ավելի ու ավելի մեծ տեղ է գրավում աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային ձևը, որն առավել լրիվ է համապատասխանում գիտատեխնիկական առաջընթացի, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման արդի պահանջներին։ Այն, ինչպես ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, ամբողջովին բխում է կուսակցության տնտեսական ստրատեգիայի ոգուց։ Միացյալ կարգագրերով գործող կոմպլեքսային բրիգադներում հնարավորություն է ընձեռվում ապահովելու ժամանակի, աշխատանքային և նյութական ռեսուրսների էական տնտեսում, ամրապնդելու կարգապահությունը, բարձրացնելու մարդկանց վաստակն ու նյութական շահագրգռությունը, մասնագիտական վարպետությունը։

Իրոք, փորձը ցույց է տալիս, որ գործերն առավել հաջող են ընթանում այնտեղ, որտեղ բարձր է մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, նյութական շահագրգռությունը։

Աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի արմատավորման նպատակով զգալի գործ է կատարվել «Գյուղտեխնիկա» պետական կոմիտեի համակարգում։ Նկատի ունենալով, որ տասնմեկերորդ հնգամյակում աշխատանքի կազմակերպման այդ ձևը պետք է լինի հիմնականը և արդեն այժմ բրիգադը, որպես կոլեկտիվի սկզբնական օղակ, օրգանապես ընդգրկվում է արտադրության կառավարման ընդհանուր համակարգի մեջ, ապա ընթացիկ հնգամյակում այդ ձևում կընդգրկվի համակարգի բանվորների ընդհանուր թվի 60 տոկոսը։ Կոմիտեի աշխատանքի գիտական կազմակերպման կենտրոնը մշակել է աշխատանքի բրիգադային ձևի կազմակերպման ու ներդրման կարգ։ Նոր ձևի կիրառման պայմաններում մեծ տեղ է հատկացվում բանվորների աշխատանքային մասնակցության գործակցին, որը բրիգադի կոլեկտիվ աշխատանքի արդյունքում յուրաքանչյուր բանվորի ռեալ ավանդի ընդհանրացված գնահատականն է։

Այսօրվա դրությամբ, կոմիտեի համակարգում կազմակերպված է շուրջ 130 բրիգադ, որտեղ ընդգրկված է 1.500 մարդ կամ բանվորների ընդհանուր թվի 20 տոկոսը։ Բրիգադային ձևի ներդրման շնորհիվ համակարգում բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, բարելավվել կատարված աշխատանքների որակը, կրճատվել կադրերի հոսունությունը։

Աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային ձևի ներդրման ու հետագա զարգացման նպատակով դրական աշխատանքներ են տարվում հատկապես Կամոյի անվան շրջանի, Հրազդանի, Նաիրիի, Նոյեմբերյանի շրջմիավորումներում, Աշտարակի, Աբովյանի, Վարդենիսի, Իջևանի մեքենամելիորատիվ կայաններում։ Նշված ձեռնարկություններում բանվորների ընդհանուր թվի 60—90 տոկոսը աշխատում է բրիգադային եղանակով։

1981 թվականին Կամոյի շրջանի շրջգյուղտեխնիկայում, միայն բրիգադային ձևի ներդրման շնորհիվ, պայմանականորեն ազատվել է 20 մարդ, ստացվել է 40 հազար ռուբլու տնտեսական օգուտ։ Իսկ Աշտարակի, Աբովյանի, Վարդենիսի, Իջևանի մեքենամելիորատիվ կայաններում 18 ազատված բրիգադավարներ դարձել են աշխատող տրակտորիստ-մեքենավարներ, որի շնորհիվ ո՛չ միայն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, այլև նշված ՄՄ կայանները համալրվել են նույնքան որակյալ մեխանիզատորներով։

Այնուամենայնիվ, բրիգադները տնտհաշվարկի փոխադրելու գործում դեռևս առկա են դժվարություններ՝ կապված արտադրական սպասարկման, աշխատանքի կազմակերպման ու ղեկավարման, տեխնիկապես չհիմնավորված արտադրական ու նյութական նորմաների կիրառման հետ։

Նկատի ունենալով, որ աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային մեթոդը միայն այն ժամանակ է պատշաճ արդյունք տալիս, երբ բրիգադի ստեղծումը չի դառնում ինքնանպատակ, այլ զուգակցվում է տնտեսական կուռ համակարգի կազմավորումով, որտեղ բրիգադը կարող է դրսևորել իր առավելությունները, կոմիտեն մշակել է կոմպլեքս միջոցառումների պլան։

Հանրապետական «Գյուղտեխնիկա» պետական կոմիտեի կազմակերպությունները ու ձեռնարկությունները հիմնականում կատարում են իրենց պլանային առաջադրանքները գործունեության բոլոր ուղղություններով և ձգտում են բարելավել տեխնիկատնտեսական ցուցանիշները, կատարելագործել կոլտնտեսությունների ու սովխոզների հետ արտադրատնտեսական կապերը։ Այնուհանդերձ, դեռևս լիովին չի ապահովվում պարտավորությունների կատարումը տնտեսությունների և մելիորատիվ կազմակերպությունների հանդեպ։ Բոլոր կազմակերպություններում չէ, որ բավարար աշխատանք է տարվում հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման, խնայողության ռեժիմի կիրառման, միջոցների խնայողաբար օգտագործման համար։ Առանձին տեղերում տեղիք է տրվում աշխատաժամանակի, մեքենաների ու սարքավորումների օգտագործման կորուստների, մի շարք տեղերում առկա են լուրջ թերություններ աշխատանքի և նյութերի նորմավորման հարցում։

Համակարգի գործունեության արդյունավետության բարձրացման կարևոր ոլորտը առաջիկայում ևս մնում է արտադրության մասնագիտացումը և համակենտրոնացումը, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի ներդրումը։ Հրատապ են համակարգի գործունեության պլանավորման բարելավումը, ավելի բարձր պլաններ ստանձնելու համար գործնական խթանիչների արմատավորումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մեջ մտնող կազմակերպությունների պահանջների պատշաճ բավարարումը։

Մեր պարտքն է հետևողականորեն զարգացնել և խրախուսել մեր կազմակերպությունների ղեկավար աշխատողների ու մասնագետների նախաձեռնող և ստեղծագործ աշխատանքը, բարձրացնել նրանց անձնական պատասխանատվությունը կուսակցության ու կառավարության որոշումները կյանքի կոչելու, ՍՍՀՄ կազմավորման 60-ամյա հոբելյանն արժանավայել դիմավորելու համար։

---

# ԱՄԵՆՕՐՅԱ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ԿԵՆՑԱՂԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆԸ

**ԴՈՐԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԿԿ Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՅԻՍՅԱՆ (1982 թ.) պլենումի ընդունած պարենային ծրագրի նպատակն է հնարավոր կարճ ժամկետներում երկրի բնակչությանը հուսալիորեն ապահովել սննդամթերքներով։ Դա բխում է սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման վերաբերյալ կուսակցության տնտեսական քաղաքականության ծրագրային պահանջից, որն այնքան կարևորեց ՍՄԿԿ XXVI համագումարը։ Պարենային ծրագիրը հաջողությամբ իրագործելու նպատակով կուսակցությունը խնդիր է դնում ապահովել գյուղատնտեսության և դրան հարող բոլոր ճյուղերի անշեղ զարգացումը։

Պարենային ծրագրի կատարման գործում վճռական նշանակություն է հատկացվում անասնապահության վերելքին։ Խնդիր է դրվում առաջին հերթին էապես ավելացնել կովերի կաթնատվությունը և մթերակայան հանձնվող անասունների կենդանի քաշը, մեծացնել անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների ծավալը։

Կուսակցության առաջադրած այդ պահանջների կարևորությունը լավ են ըմբռնում Կամոյի շրջանի անասնապահները։ Ուսումնասիրելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի հաստատած պարենային ծրագիրը և մյուս որոշումները՝ նրանք լի են վճռականությամբ նվաճելու նոր, ավելի բարձր բնագծեր, արժանի ավանդ ներդնելու անասնապահական մթերքների ավելացման համար մղվող համաժողովրդական պայքարում։

Անասնապահության կոմպլեքսային զարգացման շահերը պահանջում են համակողմանիորեն նախապատրաստվել այդ գործին, բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը, նրանց համակել աշխատանքային ոգևորությամբ։

Կուսշրջկոմը և տնտեսությունների սկզբնական կազմակերպությունները սևեռուն ուշադրություն են նվիրում այդ խնդիրներին։ Մենք ձգտում ենք, որպեսզի յուրաքանչյուր աշխատավոր հստակ պատկերացում կազմի պարենային ծրագրի համապետական նշանակության մասին և իր ուժերը ներածին չափով ներդնի դրա իրականացման համար։

Անասնապահության գործում, մասնավորապես մեր շրջանի համար, ուրույն տեղ ունի ամառանոցային կամ յայլաղային շրջանը։ Մեզ մոտ, բարձր լեռնային պայմաններում, յայլաղային շրջանի կարևորությունն անգնահատելի է։ Նախ՝ այն երկարատև է. խոշոր եղջերավոր անասունների համար՝ 135, մանրի համար՝ 220 օր, և երկրորդ՝ այդ շրջանում ստացվում է անասնապահական մթերքների զգալի մասը, գրեթե առանց էական նյութական ծախսումների։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը նորովի դրեց գյուղի սոցիալական զարգացման հարցը՝ դիտելով այն իբրև պարենային ծրագրի օրգանական մաս։ Այդ պայմաններում, բնականաբար, ավելի է կարևորվում գյուղատնտեսության աշխատողների սպասարկման գործը, դառնում կուսկազմակերպությունների, սովետական ու գյուղատնտեսական մարմինների, տնտեսական

ղեկավարների, կուսակցության շրջկոմի մշտական հոգածության առարկան։

Սարվորների սպասարկման հարցին ամեն տարի անդրադառնում են շրջկոմը և պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները։ Ընթացիկ տարվա հունիսի 16-ին շրջկոմի բյուրոն համակողմանի քննարկեց յայլաղային աշխատանքների նախապատրաստման և 1982 թ. արոտային շրջանում անասնապահական մթերքների ավելացման հարցը, նշեց մի շարք միջոցառումներ, որոնց իրականացումը կնպաստի ամառանոցներում անասնապահական մթերքների արտադրության ավելացմանը, արտադրվող մթերքների որակի բարձրացմանը և ինքնարժեքի իջեցմանը։

Կուսշրջկոմը մշտապես հետևում է յայլաղային շրջանում տնտեսությունների առջև ծառացած խնդիրների լուծմանը։ Այդ գործում ընդգրկում ենք նաև սովետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների շատ ներկայացուցիչների։ Փորձը ցույց է տալիս, որ այդ ձևով հնարավոր է լինում կենտրոնացնել նաև նրանց ջանքերը, խուսափել առաջացող պրոբլեմները տարբեր կազմակերպություններում քննարկելիս միմյանց կրկնելուց և ընդլայնել հսկողության շրջանակները։

Շրջանում նկատելիորեն աճել է ամառանոցներում գոմերով ու փարախներով ապահովված տնտեսությունների թիվը։ Անասնապահական կառույցների կողքին շատ տեղերում կարելի է հանդիպել սարվորների տնակների ու տնտեսական շինությունների։ Անասնապահների տնակների նորոգման և նորերի կառուցման հարցերով լավ են զբաղվում Կամոյի, Հացառատի, Կարմիրգյուղի, Նորադուզի, Արծվաքարի պետական տնտեսությունները։ Այդ և այլ տնտեսություններ միաժամանակ ծածկեր կառուցեցին մատղաշների համար, նորոգեցին սար տանող ճանապարհները։

Յայլաղային շրջանում անասնապահական մթերքների աճն ապահովելու և մարդկանց պահանջմունքները բավարարելու գործում անժխտելի է ջրամատակարարման կարևորությունը։ Գավառագետի ոռոգման և ջրարբիացման համակարգի վարչության կոլեկտիվն անհրաժեշտ հսկողություն է սահմանել դրա նկատմամբ։ Այժմ շրջանում ջրարբիացված արոտավայրերը կազմում են 25.000 հեկտար։ Լուծվել է և խմելու ջրի հարցը։

Որոշակի տեղաշարժ կա շրջկոոպի և քաղառի աշխատանքում. նրանք առևտուրը կազմակերպում են անասնապահների նախնական պատվերների հաշվառմամբ։ Շրջկոոպի վարչությունը Սարուխանի, Գեղարքունիքի, Նորադուզի, Կարմիրգյուղի յայլաղներում բացել է խանութներ։ Բնակչության առևտրի սպասարկումը բարելավելու նպատակով գործում են նաև շրջկոոպի երեք շրջիկ ավտոկրպակները։ Քաղառը «Ագրիչա» կոչվող ամառանոցի սարվորներին սպասարկում է ստացիոնար խանութի, իսկ Նորադուզի պետական տնտեսության և Կամոյի սովխոզ-տեխնիկումի անասնապահներին՝ ավտոկրպակների միջոցով։ Այս ամենի շնորհիվ սարվորն այլևս ինչ-որ բան գնելու համար երկար ճանապարհ չի կտրում և գյուղ հասնում։ Իրեն հարկավոր առաջին անհրաժեշտության ապրանքները նա հիմա ձեռք է բերում յայլաղում։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց հիմնական խնդիրներից մեկը համարում են սարվորների կուլտուրական հանգստի կազմակերպումը։ Նրանց համար հաճախակի ցուցադրվում են կինոնկարներ, տրվում համերգներ ու ներկայացումներ։

Պարենային ծրագրի իրագործումը սովետական յուրաքանչյուր քաղաքացու, յուրաքանչյուր կոմունիստի գործն է։ Դա լավ են գիտակցում նաև կուլտուրայի բնագավառի աշխատողները, որոնք ՍՍՀՄ կազմավորման մեծ հոբելյանի նախապատրաստության շրջանում ավելի են աշխուժացրել իրենց գործունեությունը։ Իսկ դա անասնապահների առօրյան դարձնում է բովանդակալից ու հետաքրքրական։ Յայլաղային շրջանի առաջին իսկ օրից շրջանային և քաղաքային կուլտուրայի բաժինների աշխատողները ձեռնամուխ եղան գեղարվեստական ինքնագործունեության աշխուժացմանը, սովետական կյանքի նորմերի, կուլտուրայի, արվեստի պրոպագանդմանը։

Շրջանում գեղեցիկ ավանդույթ է դարձել անասնապահների գերդաստանների մեծարման, նրանց վաստակաշատ անդամների հետ հանդիպման երեկո-



ների անցկացումը։ Հուզիչ էր Նորադուզի ոչխարաբուծական ֆերմայի հովիվներ Ավետիք Բարսեղյանի և Ռաֆիկ Թադևոսյանի հետ հանդիպման երեկոն, որը կազմակերպվել էր գյուղի մշակույթի տան նախաձեռնությամբ։ Հանդիպումն անցավ մարդու և աշխատանքի միասնության նշանաբանով։ Նման հանդիպումները նպաստում են աշխատանքի հեղինակության բարձրացմանը, դաստիարակչական մեծ նշանակություն ունեն երիտասարդների համար։

Բազմաբովանդակ են դարձել ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված երիտասարդական միջոցառումները։ Արծվաքարի յայլաղում անցկացվեց «Բարձր պահենք մեր սարերի պատիվը» թեմատիկ երեկոն, որտեղ ելույթ ունեցան երիտասարդ անասնապահները։ Երեկոն ցույց տվեց, որ նրանք միանգամայն ճիշտ են ըմբռնում իսկական հայրենասիրության իմաստը. հայրենի գյուղի հանդեպ սիրո իրական ապացույցը այն անձնական ավանդն է, որ մարդը ներդնում է նրա բարգավաճման գործում։

Յայլաղներում ուժեղացվել է աշխատավորներին ցույց տրվող բժշկական ծառայությունը։ Կանոնավոր գործում են դեղատնային և բուժական կետեր, որտեղ աշխատում են լավագույն մասնագետներ, այդ թվում հմուտ բժիշկներ Պապին Գևորգյանը, Յուրիկ Բոխյանը, Սիլվա Վարդանյանը և ուրիշներ։ Շրջանային կենտրոնական հիվանդանոցի, սանէպիդկայանի միացյալ հանձնախումբը, որը բաղկացած է տարբեր մասնագիտության տեր բժիշկներից, լինում է տեղերում, ստուգում անասնապահների առողջական վիճակը, սանիտարահիգիենիկ պայմանները, ձեռնարկում կանխարգելիչ միջոցներ։ Նախկինում հիվանդություն անցկացրած կթվոր-անասնապահները վերցված են հաշվառման, և բժիշկները նրանց վերաբերվում են առանձնահատուկ հոգատարությամբ։ Բուժական սպասարկման արդյունավետ ձևերից է բժշկական կոնսուլտացիան։ Յայլաղներ մեկնող ագիտբրիգադների կազմում ընդգրկված են զանազան թեմաներով դասախոսող կամ զրույց անցկացնող բժիշկներ։

Ամառանոցային շրջանում ևս մեծ կարևորություն է տրվում գիտության
և արտադրության կապին։ Այդ առումով շրջսովետի գործկոմի գյուղվարչու-
թյունը լուրջ օգնություն է ցույց տալիս անասնապահության մասնագետնե-
րին։ Կամոյի սովխոզ-տեխնիկումը շարունակում է վաղուց հաստատված կա-
պը ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության անասնապահության և անաս-
նաբուժության գիտահետազոտական ինստիտուտի հետ։ Գիտնականների օգ-
նությամբ և խորհրդով արոտավայրերը բարելավվում, տեսքի են բերվում։
Անասնապահության մեջ ներդրվում են գիտական լուրջ հանձնարարականներ,
կատարվում են հետաքրքրական փորձեր։ Դրա շնորհիվ արտադրական ճյու-
ղերը լուրջ վերելք են ապրում. օրինակ, ոչխարաբուծական № 2 բրիգադի կո-
լեկտիվը, որը ղեկավարում է ՀՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր Ստեփան
Քոլոզյանը, 100 մայր ոչխարից ապահովել է 97 գառ և մեկ ոչխարից՝ 4,5 կգ
բուրդ։ Բրդատվության բարձր մակարդակն արդյունք է «Լիսկինյան» ցեղի ոչ-
խարների աճեցման և հոտի ցեղային կազմի բարելավման։ Հիշենք նաև, որ
ամառանոց տեղափոխվելուց առաջ շրջանում կազմակերպվեց գիտագործնա-
կան կոնֆերանս՝ նվիրված անասնապահության ինտենսիվացմանը։ Արծարծ-
վեցին արոտային շրջանում աշխատանքի կազմակերպման, արոտավայրերի
արդյունավետ օգտագործման հարցերը։

Մենք ձգտում ենք, որպեսզի յուրաքանչյուր կազմակերպություն
իրեն հավասարապես պատասխանատու զգա ինչպես հանրային հոտի արո-
տային սեզոնը հաջող անցկացնելու, այնպես էլ սարվորների սպասարկման
գործը արմատապես բարելավելու համար։ Այդ նպատակով վերջերս սովխո-
զային սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների համար անց-
կացրինք սեմինար-խորհրդակցություն՝ նվիրված անասունների յայլաղային
շրջանի հաջող անցկացմանը։

Ամառանոցներում տարվող աշխատանքի հարցերն արծարծվեցին նաև
կուսշրջկոմի՝ հուլիսի 14-ին տեղի ունեցած պլենումում, որը քննարկեց
«ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումների, ՍՄԿԿ Կենտկո-
մի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի «Մինչև 1990 թվականն ընդ-
գրկող ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և նրա իրականացման

# ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՈՒՂԻՈՎ

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով վերջերս սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում շնորհվեց Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսության նախագահ, ՀԿԿ Կենտկոմի անդամ, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ, Լենինի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանների ասպետ ԶԱՔԱՐ ԶԱՔԱՐՅԱՆԻՆ:**

**Խմբագրության խնդրանքով լրագրող ԽԱՉԱՏՈՒՐ ԱՎԱԳՅԱՆԸ հարցազրույց ունեցավ Զ. Զաքարյանի հետ: Ընթերցողներին ենք ներկայացնում այդ զրույցի շարադրանքը:**

**— Ընկեր Զաքարյան, սրտանց շնորհավորում եմ Ձեզ կառավարական բարձր պարգևի առթիվ...**

— Նախ պիտի շնորհավորեք մեզ՝ գյուղի աշխատավորներիս, ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի հավանությանն արժանացած պարենային ծրագրի առթիվ: Պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և դրա իրականացման միջոցառումների մասին» զեկուցումը կուսակցության նոր խոսքն է, գյուղի, նրա պրոբլեմների, նրա այսօրվա ու վաղվա զարգացման հիմնական խնդիրների լուծման նկատմամբ կուսակցության հոգածության արտահայտությունը: Հպարտության ու երախտագիտության զգացումով են տոգորում մեզ ընկեր Բրեժնևի զեկուցման և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշման յուրաքանչյուր դրույթի մեջ արտահայտվող այն ըմբռնումն ու սրտացավ վերաբերմունքը, որ հարազատ կուսակցությունը ցուցաբերում է գյուղատնտեսության զարգացման պրոբլեմներին: Առաջադրված պարենային ծրագիրը գիտականորեն հիմնավորված է, կոնկրետ ու գործնական և ելնում է մեր իրական պայմաններից ու հնարավորություններից: Դրա իրագործման համար սովետական պետությունը ներդնում է հսկայական միջոցներ, մոբիլիզացնում ո՛չ միայն գյուղի, այլև երկրի բոլոր աշխատավորների ջանքերը: Եվ այդ պատահական չէ: Բնակչությանը սննդամթերքով հուսալիորեն ապահովելը սովետական մարդկանց կենսական պահանջմունքների բավարարման ծրագրային պահանջի իրագործման էական պայմաններից է, տնտեսական ու սոցիալ-քաղաքական առաջնահերթ խնդիր, որ պիտի լուծվի ըստ հնարավորին կարճ ժամանակամիջոցում:

**— Կոտայքի կոլտնտեսությունը հանրապետությունում առաջավորներից է: Եվ, կարելի է ենթադրել, որ պարենային ծրագրից բխող ձեր անելիքների իրագործումը պետք է ավելի դյուրին լինի:**

— Դա և՛ այդպես է, և՛ այդպես չէ: Որոշակի մակարդակի հասած ուժեղ տնտեսությունում, թող զարմանալի չթվա, անելիքները միշտ էլ շատ ավելին են լինում: Արտադրության հարանուն ծավալի պայմաններում համապատասխանաբար մեծանում են նաև պահանջները: Իսկ մեր տնտեսությունը բազմաճյուղ է, ու ամեն բնագավառում ամեն օր նորանոր պրոբլեմներ են ծագում...

1981-ի տնտեսական արդյունքներով կոլտնտեսությունը, արդեն յոթերորդ անգամ, հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Մեր լեռնային ոչ մեծ գյուղն անցյալ տարի պետությանը վաճառեց մեկ միլիոն հարյուր հազար կիլոգրամ կաթ, 130 հազար կիլոգրամ միս, հինգ հարյուր հազար կիլոգրամ միրգ, 200 հազար կիլոգրամ բանջարեղեն: Տնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 45 ցենտներ հացահատիկ, իսկ կովերի միջին կաթնատվությունը հասավ մոտ 4.300 կիլոգրամի: Մեր ունեցած վարելահողի յուրաքանչյուր հեկտարից այժմ ստանում ենք 4.000 ռուբլու եկամուտ, մոտավորապես այնքան, որքան Արարատյան դաշտի լավագույն տնտեսություններում: Պետությանը վաճառած մթերքների դիմաց ստացանք 2 միլիոն 300 հազար ռուբլու եկամուտ, որից շուրջ 600 հազարը կազմում է զուտ օգուտը: Դրա շնորհիվ կոլտնտեսականների դրամական միջին վարձատրությունը հասել է ամսական մոտ 300 ռուբլու, ընդ որում մեխանիզատորներն ստանում են մինչև 350, իսկ անասնապահները՝ մինչև 400 ռուբլի աշխատավարձ:

**— Ով ծանոթ է եղել նախկին Ելղովանի տնտեսության իրավիճակին, նրան այս հասույթները կարող են հրաշք թվալ:**

— Իրոք որ հրաշք, բայց... օրինաչափ, պլանավորված: Մեր գյուղը, որ ժառանգել է նախկին Կոտայքի շրջանի անունը, հին բնակավայր է. նրա պատմության ամենակարևոր էջը, սակայն, բացվեց 1958-ին, երբ գործարկվեց Կոտայքի ջրանցքի առաջին հերթը: Կոլտնտեսության տարածքում ջրանցքը ոռոգելի դարձրեց մոտ 380 հեկտար հող: Մեծ բարեբախտություն էր այդ և մեծ... հոգս: Ջուրն ինքնին շատ բան չէր տա մեզ, եթե դրան չընխառնեինք մեր քրտինքը: Լեռնալանջերի քարքարոտ հողի ամեն թիզը հատուկ խնամք ու մշակություն էր պահանջում, որպեսզի պիտանի դառնար այգեգործության, բանջարաբուծության, ցանովի կերային կուլտուրաների համար: Բայց դա հարցի մի կողմն էր: Մյուսն այն էր, որ նախկին ելղովանցին ծանոթ չէր, այսպես, բանջարաբուծությանն ու այգեգործությանը. ակնաղբյուրներից եկող խմելու ջրով ոռոգվող փոքրիկ մի տարածությունում մինչ այդ բացառապես մշակվում էր ծխախոտ, հատուկենտ մրգատու ծառեր կային միայն հատուկենտ տնտեսություններում: Հողեբանահատական տնտեսություններում: Հողեբաանհատական տնտեսություններում: Հողեբանական բնույթի մի բարդություն ևս. ելղոնական բնույթի մի բարդություն ևս. ելղովանցիները վարժվել էին արտադրության փոքր ծավալին, մի տեսակ «հանգիստ» էին ապրում, իսկ ջրանցքը ենթադրում էր վիթխարի ջանք ու լարվածություն, անհանգստություն:

Հիշում եմ այն թերահավատությունն ու երկյուղը, որով շատերը վերաբերվում էին գյուղի զարգացման հեռանկարներին: Հեշտ չէր ղի զարգացման հեռանկարներին: Հեշտ չէր հաղթահարել բնության տվածով գոհանալու սովորույթը: Եվ պահանջվեց փորձի ու ընտելության ստիճանական կուտակում, նոր աշխատելակերպի ու հոգեբանության կազմավորման տևական ընթացք: Այսօր շատ դըժվարություններ ետևում են մնացել, բայց պրոցեսը շարունակվում է, հանրային տնտեսությունը հաստատում է իր նոր դեմքը՝ լուծելով նորանոր խնդիրներ:

Այսօր արդեն մենք հասել ենք այն բնագծերին, որ ՀԿԿ Կենտկոմի պլենումում ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ առաջադրված են հանրապետության գյուղատնտեսությանը 1990 թվականի համար: Իսկ որոշ արդյունքներով՝ հացահատիկի արտադրությամբ, անասունների մթերատվությամբ նույնիսկ գերազանցել ենք այդ պահանջները: Բայց չմոռանանք, որ պարենային ծրագրով նախատեսված առաջադրանքները կուսակցությունը համարում է նվազագույնը: Իրոք, շատ ավելի մեծ են պարենամթերքների արտադրության եղած հնարավորությունները: Մեր կոլտնտեսության համար դրանք ոչ թե սոսկ տարածության, ծավալների, քանակի, թվի ավելացման հնարավորություններ են, այլ առավելապես՝ արտադրության ինտենսիվացման, մթերատվության ու բերքատվության բարձրացման, արտադրվող մթերքների որակի բարելավման հնարավորություններ, որոնք, իրոք, անսահման են: Հեկտարը պետք է ավելի արդյունավետ «գործի», ֆերման՝ ավելի շատ միս ու կաթնամթերք տա, մեխանիզմներն ու պարարտանյութը՝ առավել շահավետ օգտագործվեն... Թվում է, թե սրանք հին ու ծանոթ պահանջներ են, որոնք միշտ էլ առաջադրվել են գյուղի աշխատավորներին: Իբրև պահանջ՝ թերևս: Բայց այսօր պարենային ծրագրի իրագործումը դառնում է համաժողովրդական գործ, տրամադրվում են անհրաժեշտ միջոցներ և պահանջվում է, որ ամեն ինչ արվի նպատակային-կոմպլեքսային ձևով, գիտական հիմունքներով, իրոք ժամանակակից մակարդակով: Եվ մենք զգում ենք, որ հնարավո՛ր է լիովին իրագործել պարենային ծրագիրը:

**— Ընկեր Զաքարյան, Ձեր կարծիքով ո՞րն է այն հիմնական գործոնը, որի շնորհիվ միանման հողակլիմայական պայմաններում Կոտայքի կոլտնտեսությունը շրջանի մյուս տընտեսություններից անհամեմատ ավելի բարձր արդյունքների է հասել գրեթե բոլոր բնագավառներում:**

— Երևի մտածում եք, որ կպատասխանեմ՝ ավելի լավ ենք աշխատում, տնտեսությունն ավելի հմտորեն ենք վարում և այլն: Դա՝ իր հերթին: Բայց գլխավորը, ըստ իս, մեր տընտեսությունում նշանաբան դարձած սկզբունքն է՝ միշտ առաջ նայել, հեռանկարով աշխատել, այսօր վաղվա գործերով ապրել ու մտահոգվել, ամեն ինչ կանխատեսել ու նախապատրաստել: Իրոք, արդյունավետ սկզբունք է, որի գործնական կիրառումը մեզ ակնհայտ առավելություններ է տալիս ուրիշների համեմատ:

Վերցնենք, օրինակ, անասնապահության բնագավառը: Մեր գործերն այստեղ լավ չէին.

ֆերմաներից չնչին եկամուտ էինք ստանում, մարդիկ խուսափում էին ծանր և նվազ վարձատրվող այդ աշխատանքից։ Եվ մենք այդ դժվարին կացության մեջ սկսեցինք կաթնանասնապահական նոր համալիրի կառուցումը, հատկացնելով դրան 660 հազար ռուբլի։ Շատերին այդ շռայլություն էր թվում, անհարկի զոհողություն, իսկ ոմանք էլ ակնարկում էին, թե նախագահը մասնագիտությամբ անասնաբույժ է, դրա համար էլ կոլտնտեսության միջոցները տրամադրում է անասնապահությանը... Մինչդեռ դա տնտեսական անհրաժեշտություն էր՝ թելադրված օբյեկտիվ գործոններով. գյուղը հրաշալի արոտավայրեր ու խոտհարքներ ունի, կողքին գտնվող Աբովյան քաղաքը, ինչպես և մայրաքաղաքը անասնապահական մթերքների իրացման անսպառ հնարավորություններ են ընձեռում։ Եվ միայն անտնտեսվար ու անհեռատես ղեկավարը կարող էր անտեսել այդ պարագան։ Ու կառուցվեց, գործարկվեց կաթնապրանքային համալիրը, որը հենց առաջին երեք տարիների ընթացքում լիովին հատուցեց կատարված ծախսերը, դարձավ տնտեսության եկամտի հիմնական աղբյուր։

— **Բանն, անշուշտ, միայն ժամանակակից մասնաշենքերն ու հարմարությունները չէին...**

— Այո՛, դրանք, որքան էլ կատարյալ, ինքնին չէին կարող սպասվող արդյունքը տալ, եթե չլուծվեին հարակից շատ հարցեր։ Հարկավոր էր բարելավել հոտի, հատկապես կովերի, տոհմային կազմը. մենք ձեռք բերեցինք կովկասյան գորշ և սևաբղետ տոհմի կովեր, որոնց կաթնատվությունը հասնում է տարեկան մինչև 5.000 կիլոգրամի։ Ի դեպ, տոհմի բարելավման գործում մեզ շատ օգնեցին անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտի գիտնականները, որոնք սերտորեն կապված են մեր տնտեսության հետ։

Ավելի դժվարինը և վճռորոշը առատ ու բարձրորակ կերի կայուն բազա ստեղծելն էր։ Միայն բնական արոտավայրով, խոտհարքով և կեր գնելով գործը գլուխ չէր գա, և մենք դիմեցինք համարձակ մի քայլի, որոշակի դիմադրություն հաղթահարելով՝ փոխեցինք մեր հողատարածքի օգտագործման սխեման։ Մինչ այդ մենք արտադրում էինք «ամեն ինչից մի քիչ», ընդ որում ծխախոտին ու բանջարեղենին հատկացվում էին գրեթե բոլոր ամենաբերրի հողերը։ Որոշեցինք այդ հողերի մեծ մասը տրամադրել կերային կուլտուրաներին, ընդսմին ոչ թե կրճատելով, այլ ավելացնելով բանջարեղենի ու ծխախոտի արտադրանքը։ Ինչպե՞ս։ Յոթ հեկտար բանջարանոցը փոխարինվեց մեկ հեկտարանոց ջերմոցով, որից առաջվա 100—120 տոննայի դիմաց սկսեցինք ստանալ 200 տոննա պոմիդոր ու վարունգ, այն էլ ամբողջ տարին։ Ծխախոտի դաշտն էլ կրճատեցինք 20 հեկտարով՝ լիովի հատուցելով դա մնացած տարածության բերքատվության շեշտակի բարձրացմամբ։ Եվ ազատված տարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացվող 525 ցենտներ եգիպտացորենի կանաչ զանգվածը, 80 ցենտներ առվույտը էական հավելում եղան բնական խոտհարքներին ու արոտավայրերին։ Բացի այդ կառուցեցինք համակցված կերի համալիր՝ տարեկան 300—350 տոննա արտադրակարողությամբ, որը հնարավորություն տվեց զգալիորեն հարըստացնելու անասունների կերաբաժինը։ Այսպես ապահովվեց 850 գլուխ կովերի ու մատղաշների և 2.000 գլուխ մանր եղջերավոր անասունների առատ կերակրումը։

Բայց մեր ամենամեծ նվաճումը, ըստ իս, այն է, որ անասնապահներն ու այդ բնագավառում աշխատող մասնագետները տիրապետեցին առաջավոր մեթոդներին, նոր մեխանիզմներին։ Այդ, իսկապես, բարդ խնդիր է։ Գաղտնիք չէ, որ շատ տնտեսություններում են կառուցվում մասնաշենքեր, համալիրներ, ձեռք են բերվում նորագույն մեխանիզմներ, սարքեր, կազմակերպվում են դասընթացներ, օգտակար հրահանգներ ու ցուցումներ են տըրվում... Իսկ արդյունքը հաճախ սպասվածը չի լինում։ Ինչո՞ւ։ Որովհետև մարդիկ, նրանք, ովքեր պետք է օգտագործեն, կիրառեն այդ ամենը, փաստորեն շարունակում են աշխատել հին, «պապենական» ձևով, չեն հարմարվում նոր միջոցներին։ Հմտության, փորձի, տեխնիկական կուլտուրայի պակասից ավելի խանգարում է այն թերահավատությունը, որ անասնապահները (և ո՛չ միայն նրանք) ցուցաբերում են ավանդական սովորույթներն ու պատկերացումները խախտող նորամուծությունների հանդեպ։ Այն էլ ասենք, որ երբեմն դրան նպաստում են հենց այդ նորամուծությունների թերությունները, անկատարությունը. եթե սարքն ու մեխանիզմը կատարյալ չեն, մեթոդը թերի է, տեղական պայմաններին չըհարմարեցված, այդ դեպքում կասկածի տակ է առնվում դրանց պիտանիությունն առհասարակ։ Եվ հետևանքը լինում է այն, որ ներդրվող միջոցները, արվող ծախսերը չեն փոխհատուցվում։ Մեզ մոտ ևս այդ առումով դըժվարություններ շատ եղան, բայց աստիճանաբար հաղթահարեցինք դրանք՝ մարդկանց և տեխնիկայի, այսպես ասած, փոխադարձ մերձեցմամբ, ընտելացմամբ։

Այո՛, ո՛չ միայն մարդը պիտի մեքենային, նորամուտ մեթոդին վարժվի, այլև մեքենան, մեթոդը հարմարեցվի մարդուն, նրա հմտության, կուլտուրայի չափին, նրա հոգեբանությանն ու սովորույթին։ Սա շատ բարդ պրոցես է, որ պահանջում է հատուկ ուսումնասիրություն, գիտական մոտեցում։ Վերցնենք, ասենք, կթի մեքենայացումը. իհարկե, ոչինչ չէր ստացվի, եթե դա կատարվեր առանց կովերի տեսակը, կրծքի, պտուկների ձևը հաշվի առնելու։ Ստանդարտ, «անտարբեր» մեխանիզմները խրտնեցնում են ո՛չ միայն անասուններին, այլև կթվորներին։ Եվ մենք համապատասխան ընտրություն կատարեցինք։ Մյուս կողմից՝ հաղթահարվեց այն նախապաշարմունքը, թե ձեռքի աշխատանքն այստեղ ամենաորակյալն է ու ձեռնտուն։ Մեր գոմերում ամեն ինչ մեքենայացված է՝ աղբի հեռացումից մինչև անասուններին կապել-արձակելը։ Անասնապահների համար դա դարձել է բնական մի բան. նրանք համոզվել են, որ մեքենայացումը ո՛չ միայն իրենց ազատում է առաջվա կեղտոտ աշխատանքից, այլև բարձրացնում վարձատրությունը։ Եվ գլխավորը. դա պարզապես անհրաժեշտություն է, առանց մեքենայացման այսօր անկարելի է մի քայլ իսկ անել։ Սա այն կուլտուրան է և այն նոր հոգեբանությունը, որ մեր տնտեսության հետագա զարգացման հենքն է ու գրավականը։ Ի դեպ ասեմ, որ ֆերմայում բոլոր պրոցեսների մեքենայացումը մեծապես նպաստում է արտադրանքի ո՛չ միայն քանակական աճին, այլև որակի բարձրացմանը. վաճառվող կաթի յուղայնությունը 4 տոկոսից բարձր է, խոշոր անասունների միջին քաշը՝ 420 կգ։ Ահա և ֆերմաներից այժմ ամեն տարի ստացվող 230 հազար ռուբլու եկամտից 100 հազարը կազմում է պետությանը վաճառվող մթերքների բարձր տեսակի համար լրացուցիչ վարձատրությունը։

Կամ վերցնենք հողագործության բնագավառը։

Այստեղ ևս հնարավոր է երկու մոտեցում։ Մեկն այն է (ցավոք, տարածվածը), երբ ջանում են հողից հնարավորին չափ շատ կորզել, չմտածելով այն մասին, որ հողը հավերժական աղբյուր է և դեռ կերակրելու է գալիք բազում սերունդների։ Նման մոտեցումն անհեռանկարային է և այսօր իսկ վնասաբեր։

Մեր սկզբունքն այլ է։ Մենք ևս ձգտում ենք հողից հնարավորին չափ շատ բերք ու բարիք ստանալ։ Եվ ստանում ենք։ Բայց վերցնում ենք՝ տալով, հատուցելով, հողը հարստացնելով։ Մշակությունը, ջուրը, ճիշտ ցանքաշրջանառությունը, օրգանական ու քիմիական պարարտանյութերը, սելեկցիոն աշխատանքը այն լծակներն են, որոնց գիտական-նպատակային կիրառությամբ մայր հողի բարեկամն ենք դառնում մենք, շարունակ հարստացնում, ավելի բերրի ենք դարձնում այն։ Հողի ձայնը պիտի լսել, պիտի սիրել հողը, հողն զգում է այդ սերը և ըստ այդմ հատուցում..

Այժմ մենք լայնորեն անցնում ենք դաշտերը անձրևացման եղանակով ավտոմատ կերպով ոռոգելուն. այդ մեթոդով ջրվող 120 հեկտար տարածությանն այս տարի կավելանա ևս 60 հեկտար։ Երաշխավորված բերքի էական գործոն է այդ, միաժամանակ՝ հողը բարելավելու միջոց։

— **Հեռանկարային-նպատակային աշխատանքը չի՞ նվազեցնում, արդյոք, կոլտնտեսականների անմիջական շահագրգռվածությունը. չէ՞ որ շատ միջոցներ եք տրամադրում այնպիսի ձեռնարկումների, որոնք անմիջական արդյունք չեն կարող տալ, մինչդեռ պարենային ծրագրով պահանջվում է այնպես անել, որ մարդիկ ակնհայտ կապ տեսնեն իրենց աշխատանքի ու անմիջական վաստակի միջև։**

— Այդ կապը, որ շատ կարևոր է, մեզ մոտ ակնբախ է։ Մենք ներդրումներ ենք անում ո՛չ ի հաշիվ կոլտնտեսականների վաստակի իջեցման, այլ՝ մեր կուտակումների, մյուս ճյուղերից ստացվող եկամտի և պետության տրամադրած վարկերի։ Մարդկանց վաստակը բարձրանում է անընդհատ և դրա հետ՝ նրանց այն համոզումը, որ դա երեկվա իրենց աշխատանքի արդյունք է, և որ այսօրվա ծախսերն ու գործերն էլ վաղն անպայման հատուցվելու են լիուլի։

Դեռևս նկատելի է այն մտայնությունը, թե իբր գյուղացին սոսկ իր անձնական օգուտին է հետամուտ, և որ նա իր մասնավոր շահն ամեն ինչից վեր է դասում։ Ու մատնանշում են, ասենք, անհատական հողամասերի մշակության ու բերքատվության «առավելությունները»։ Ի դեպ, այս չակերտները կարելի է հանել, քանի որ, իրոք, այդ ոլորտում հաճախ տեսնում ես ավելի բարձր արդյունք, որակ, եկամտաբերություն, ավելի մեծ շահագրգռվածություն ու նախաձեռնություն։ Բայց ինչի՞ց է դա և ինչի՞ մասին է վկայում։ Նախ, չպետք է մոռանալ, որ «իմի», «սեփականի» հոգեբանությունը դարերով է ձևավորվել ու արմատացել և չի կարելի սպասել, թե դա շատ հեշտ ու արագ իր տեղը կզիջի «մերի», «հանրայինի» նախընտրությանը։ Եվ հետո. մեզ պետք է ոչ թե տխրեցնի, այլ ուրախացնի այն, որ մարդիկ իրենց անհատական տընտեսությունները լավ են վարում, հողից, ծառից ու թփից առավելագույնն են ստանում. դա երկրի հարստությունն է, պարենային ծրագրի իրականացման կարևոր մի գործոն։ Եվ կուսակցությունն այսօր պահանջում է մեծ դեր հատկացնել նաև կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժան-

դակ տնտեսություններին, ապահովել դրանք պարարտանյութով, դեղամիջոցներով, գործնականորեն խրախուսել մթերատու անասունների, թռչունների թվի ավելացումը, հետևել, որպեսզի այդ տնտեսություններում աճեցվեն միայն գյուղատնտեսական պարենային կուլտուրաներ:

Սակայն պարենային ծրագրի իրականացման գլխավոր ու վճռորոշ պայմանը հանրային տնտեսությունների ամրապնդումը, արտադրանքի ավելացումն է, հանրային տնտեսավարության վիթխարի առավելությունների բացահայտումը: Խոսքը ո՛չ միայն պլանավորված-նպատակային տնտեսավարման և արտադրապրոցեսների մեքենայացման գիտական մեթոդների կիրառման մասին է, այլև մարդկային նոր փոխհարաբերությունների, նոր հոգեբանության ձևավորման: Սա պատմական խնդիր է, հեռանկարային, ապագա ունեցող խնդիր, որի լուծման գրավականը մեր այսօրվա ու վաղվա արդյունավետ աշխատանքն է հանրային տնտեսություններում, դրանց ըստ ամենայնի բարգավաճումը:

**— Եվ, իհարկե, այդ թվում մարդկանց շահագրգռվածության բարձրացումը:**

— Անկասկած: Էականն այն է, որ գյուղատնտեսական գիտության վերջին խոսքը, արտադրության առաջավոր մեթոդները բնականորեն զուգորդվեն գյուղի մարդկանց դարավոր փորձի, աշխատասիրության և հնարամտության հետ: Այն, որ հանրային տնտեսությունում մարդիկ աշխատեն մեծ նվիրումով ու եռանդով՝ տեսնելով դրա առավել շահավետությունը: Մեր տնտեսությունում էլ հետամուտ ենք դրան և, կարող եմ ասել, շոշափելի արդյունքների ենք հասել:

Մեզ մոտ վաղուց գործում է վերջնական արդյունքով պայմանավորված լրացուցիչ վարձատրության սիստեմը: Միաժամանակ, մեխանիզատորների, ծխախոտագործների, բանջարաբույծների, անասնապահների լրացուցիչ ջանքը, ձեռք բերած հավելյալ արդյունքը գնահատվում ու վարձատրվում է ակորդային ձևով: Եվ խրախուսանքի այդ սկզբունքն իրոք հրաշալի արդյունք է տալիս, դրա շահավետությունը դրսևորվում է ամենայն որոշակիությամբ: Ուստի և «խնայողությունն» այս դեպքում հավասար է ինքնակողոպտման...

Խնայողության ձգտում ենք այլ հարցերում. ջանում ենք խնայողաբար օգտագործել էլեկտրաէներգիան ու վառելանյութերը, կրճատել յուրաքանչյուր կիլոգրամ հացահատիկի, կաթնամթերքի, բանջարեղենի արտադրության համար կատարվող ծախսերը, պայքարում ենք անտնտեսվարության ու շռայլության փաստերի վերացման համար: Եվ, վերջապես, ձգտում ենք ամեն կերպ իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, միշտ հիշելով, որ ո՛չ միայն մեր տնտեսության, այլև ողջ երկրի մասշտաբով էական արժեք ունի մթերքների այնպիսի արտադրությունը, երբ արվող ծախսերը լիովին հատուցվում են և հարաճուն վերարտադրության հնարավորություն ընձեռում:

**— Կոտայքի կոլտնտեսությունը ևս, անշուշտ, պետությունից վարկեր է վերցնում:**

— Այո՛, վերցնում ենք: Եվ վարկը, ինչպես և ապառիկ վերցրած նյութերն ու մեխանիզմները, չենք դիտում սոսկ իբրև «օգնություն». պետությունը մեր գործակիցն է, որի հետ մենք փոխադարձաբար շահավետ գործարքի մեջ ենք: Պետության տրամադրած վարկը մեզ մոտ «բանում է» առավելագույն օգտավետությամբ, իրոք ծառայում իր նպատակին՝ տնտեսության զարգացմանը: Մինչդեռ գաղտնիք չէ, որ այդպես է ոչ բոլոր տնտեսություններում: Վարկը, ապառիկ միջոցները երբեմն վերցնում են ոչ թե շահարկելու, այլ «յոլա գնալու» համար և հույսներն էլ դնում են այն բանի վրա, որ կանցնի որոշ ժամանակ, և պետությունը կզիջի, կփակի տնտեսության պարտքերը... Դա, մեղմ ասած, պետության հոգատարությունից ինչպես հարկն է օգտվելու անկարողություն է:

**— Ձեր մասին ասում են, թե ամեն ինչում օգուտ, շահ եք փնտրում...**

— Էլ ի՞նչ տնտեսավար, եթե նա իր աշխատանքը, ամեն քայլը չկարողանա ծառայեցնել իր ղեկավարած տնտեսության շահերին: Այո՛, ամեն ինչ պետք է եկամուտ բերի, շահավետ լինի, ամեն ջանք պիտի հավելումով հատուցվի: Եվ ամենուր ու ամեն ինչում տնտեսության համար շահ փնտրելու մեջ չի կարելի վատ բան տեսնել:

Ըստ իս, ամենամեծ օրինազանցությունն այն է, երբ տնտեսության միջոցները, հնարավորությունները չեն օգտագործվում առավելագույն շահավետությամբ, այն, որ ոչ մի նախաձեռնություն, ռիսկ չեն ցուցաբերում՝ երկյուղելով, թե կխախտեն ինչ-ինչ հրահանգներ:

Ի դեպ, հրահանգների մասին: Ոմանց թվում է, թե տնտեսության լավ ղեկավարի ողջ գործը դրանք բծախնդրորեն, ճշտիվ կատարելն է: Որ սահմանված կարգ ու կանոնը պիտի հարգել, տնտեսական կարգապահությանը ենթարկվել, դա ամեն կասկածից վեր է: Միայն թե պիտի հաստատ իմանալ մի բան. ոչ մի կարգ ու հրահանգ, որքան էլ խելամիտ ու ստույգ, չի կարող փոխարինել տնտեսության ղեկավարի նախաձեռնությանը, պատասխանատվությանը, սրտացավությանը, տիրոջ զգացողությանը, այն բանին, ինչ կոչում են



ստեղծագործական մոտեցում, տվյալ կոնկրետ պայմաններում ծագած խնդիրների կոնկրետ լուծում:

Պարենային նոր ծրագիրը, վերջնական արդյունքի կարևորումով, լայն ասպարեզ է բացում անկաշկանդ, ճկուն, հնարամիտ տնտեսավարության համար: Եղած միջոցները, մեխանիզմները, աշխատուժը նպատակային ու շահավետ օգտագործելու հմտությունը, տնտեսական հաշվարկը, մանրը այժմ ըստ ամենայնի խրախուսվում են ու գնահատվում: Գլխավորը, ինչ խոսք, բուն արտադրության կազմակերպումն է, հողից, անասուններից, ներդրված միջոցներից առավելագույն արդյունք ստանալը: Եվ որ չափազանց կարևոր է, ամեն ինչի մասին պետք է հոգալ ժամանակին: Օրինակ, կան գյուղատնտեսական մեքենաների մասեր, որ պահեստում միշտ չեն լինում, իսկ ուրիշն էլ իրենը քեզ չի տա: Եվ մեքենան կարող է գործածելի չլիներ: Ինչու մենք այդքան սուր չենք զգում պահեստամասերի ու այլ նյութերի պակասը: Որովհետև նախօրոք ենք մեր գործը տեսնում, այն ժամանակ, երբ ուրիշները «օրվա հարցերով» են զբաղված... Մենք միշտ ժամանակին, նախօրոք ենք դիմում, պահանջում, ձեռք բերում: Եվ ստացածն էլ խնամքով ենք պահպանում, պահեստային օրինակելի տնտեսություն ունենք...

**— Երեսուն տարուց ավելի է Դուք գլխավորում եք Կոտայքի կոլտնտեսությունը, բայց տպավորությունն այնպիսին է, ասես, նորնոր եք գործի անցել և ամեն ինչ առջևում է: Երկարամյա աշխատանքը կարող է և հոգնեցնել, ձանձրացնել..**

— Կարող է, եթե մարդը միայն կատարող է, եթե չունի գործի տիրոջ զգացում և հեռանկարի, նպատակի հստակ տեսողություն, եթե զուրկ է իր և այլոց արածի լավը նկատելու և դրանով ոգևորվելու ունակությունից: Հատկապես այս վերջինը շատ կարևոր է. տնտեսության ղեկավարն ինքը պիտի հավատա դրված նպատակին հասնելու հնարավորությանը և կարողանա այդ հավատով համակել բոլորին, խրախուսել այդ ճանապարհին արված ամեն լավ քայլ: Իսկ եթե նա շարունակ միայն տրտնջաց, նվնվաց, դժգոհեց, զայրացավ ու հանդիմանեց, ոչինչ չի ստացվի:

Սա կապ չունի այն անտարբեր, «լավատեսության» ու ցուցամոլ «բարության» հետ, որ, ըստ էության, լուրջ պրոբլեմներն ու դժվարությունները չտեսնելու կամ դրանց վրա աչք փակելու արտահայտություն են:

**— Դուք գո՞հ եք Ձեր ջանքերի ու վաստակի գնահատումից:**

— Գոհ եմ: Բայց կարևորը իմ անձի ու վաստակի գնահատությունը չէ, այլ նախ այն, որ նկատվում, գնահատվում, խրախուսվում են ողջ տնտեսության, մեր աշխատավորական կոլեկտիվի ջանքն ու վաստակը: Եվ ես անսահման ուրախանում եմ, ինձ իրոք երջանիկ եմ զգում, տեսնելով, թե ինչպիսի նվիրումով ու ոգևորությամբ են իրենց գործն անում անասնապահն ու կթվորը, մեխանիզատորն ու բանջարաբույծը, այգեգործն ու մելիորատորը, և ինչպես է նրանց աշխատանքը վարձատրվում ըստ արժանվույն... Ինչպես են իրականանում քո և այլոց այն երազները, որ անհաս էին թվում...

Այս առիթով ուզում եմ մի երկու հարցի անդրադառնալ:

Այժմ, երբ պարենային ծրագրի իրագործումը դարձել է համաժողովրդական գործ, և բոլորի հայացքը գյուղին է ուղղված, կարծում եմ, տեղին կլինի, որ ճշտվեն նաև գյուղին, նրա պրոբլեմներին վերաբերող որոշ պատկերացումներ:

Ժամանակակից գյուղը շատ բարդ օրգանիզմ է, և նրա պրոբլեմներն էլ փոխվել են էապես: Մինչդեռ, եթե դատելու լինենք գյուղի մասին գրող որոշ հեղինակների գործերով, պիտի մտածենք, թե վերջին 20—30 տարվա ընթացքում համարյա ոչինչ չի փոխվել, թե այժմ էլ, օրինակ, գյուղի թիվ առաջին պրոբլեմը աշխատող ձեռքերի պակասն է ու այն, որ իբր երիտասարդությունը «փախչում է» գյուղից...

Ձեռքերն իրոք «պակասել են»: Բանն այն է, որ մեր օրերում մաճ ու բահ բռնող ձեռքեր արդեն պետք էլ չեն. մեքենան հետզհետե ամեն ինչ վերցնում է իր վրա ու ազատում այդ ձեռքերը: Եվ բնական է, որ գյուղում գոյանում է ազատ աշխատուժ: Ու այսօրվա գլխավոր պրոբլեմը, եթե կուզեք, հենց այն է, թե ինչպես զբաղեցնես, առավել արդյունավետ օգտագործես այդ ուժը: Հարկ է լինում մտածել նոր աշխատատեղերի ստեղծման մասին, և բնավ էլ պատահական չէ, որ շատ շրջաններում ու գյուղական բնակավայրերում այժմ կազմակերպվում են գյուղատնտեսության հետ երբեմն անմիջական կապ չունեցող արտադրություններ: Դա անհրաժեշտություն է: Անհրաժեշտություն է նաև գյուղական բնակչության որոշ արտահոսքը. ուսումնական հաստատություններ, շինարարություն, արդյունաբերություն... Գյուղը այդ ամենից ոչ «քայքայվում» է, ոչ էլ կորցնում իր դեմքը, պարզապես ժամանակն անում է իր սրբագրումները, առաջադրում նոր իրողություններ, որոնց դեմ ոչ թե սուր պիտի ճոճել, այլ հասկանալ ու ճիշտ կողմնորոշվել, անել հնարա-

վորը՝ գյուղի իրական շահերը պաշտպանելու համար....

Կա և հարցի մյուս կողմը. գյուղը չի կարող անվերջ մեծացնել իր տարածքը, հողի ամեն թիզը թանկ է (մենք առանց այդ էլ առաջներում շատ անհոգ ու շռայլ ենք եղել այդ հարցում), ինտենսիվ տնտեսություն վարելու համար չպետք է կորցնել ոչ մի հեկտար վարելահող: Իհարկե, անկարելի է եղածը կոնսերվացնել, պարզապես պիտի գյուղի զարգացումն ուրիշ ուղղությամբ ընթանա: Սակավահող Հայաստանում ամենատխուրն այն է, երբ տեսնում ես մշակված, բերրի հողերը բռնած գյուղ՝ շրջապատված չոր բլուրներով: Մինչդեռ հակառակը պիտի լինի. ինչո՞ւ, օրինակ, հենց անհատական հողամասի կեսն զբաղեցնել շինություններով, երբ այդ տարածության եկամուտով մի տուն կարելի է պահել:

Հողաշատ հանրապետություններում արդեն լրջորեն մտահոգվում են այդ հարցերով. գործնական քայլեր են արվում գյուղերը նորովի պլանավորելու, հասարակական ու արտադրական շինությունների հարկայնությունը բարձրացնելու, շինարարությանը հատկացվող հողամասերի ճիշտ ընտրության ասպարեզում:

Մեզ էլ են զբաղեցնում այդ խնդիրները: Արդեն պատրաստ է գյուղի նոր հատակագիծը, որի իրականացումը շուտով կսկսենք...

**— Գուցե մի երկու խոսքով էլ անդրադառնաք գյուղի կուլտուրական կյանքի կազմակերպման հարցերին:**

— Սիրով: Դա անչափ կարևոր խնդիր է: Ընկեր Կ. Դեմիրճյանն իր զեկուցման մեջ հանրապետության կուսակցական, տնտեսական ու արհմիութենական մարմինների կարևորագույն խնդիրն է համարում գյուղի սոցիալական զարգացման, գյուղի բարեկարգության, կուլտուրայի, բժշկական ու կենցաղային սպասարկման հետագա բարձրացման նպատակով հետևողական միջոցառումների իրականացումը: Ըստ էության, խոսքը քաղաքի և գյուղի միջև տարբերությունները վերացնելու, այն բանի մասին է, որ գյուղի բնակիչն օգտվի ժամանակակից գիտության, կուլտուրայի, կենցաղի բոլոր առավելություններից:

Մինչդեռ ինչ-որ անհամապատասխանություն կա այսօր գյուղի բնակիչների նյութական և կուլտուրական մակարդակների միջև: Մեր գյուղում, օրինակ, տնտեսությունների մեծ մասը սեփական ավտոմեքենաներ ունի, բոլոր տներում կտեսնեք հեռուստացույց, սառնարան, գազօջախ, ընտիր կահույք, շուտով հեռախոս ևս կլինի, գյուղն ունի և իր միջնակարգ դպրոցը, կուլտուրայի պալատը, կենցաղային կենտրոնը...

Եվ, այնուամենայնիվ, չես կարող ասել, թե ամսական 300—400 ռուբլու վաստակ ունեցող և ամեն ինչով ապահովված մարդկանց կուլտուրական զարգացման աստիճանը նույնքան բարձր է: Դա, իհարկե, շատ բարդ խնդիր է՝ պայմանավորված բազում պարագաներով: Բայց գլխավորն այն է, որ նախ ըմբռնվի դրա լուծման անհրաժեշտությունը:

**— Իսկ ի՞նչ կասեք գյուղի, նրա բնակիչների հեղինակության մասին:**

— Ինչպես ժողովուրդն է ասում՝ ամեն մարդու պատիվն իր ձեռքին է: Բայց գյուղի, գյուղական աշխատավորության հեղինակությունը բարձր պահելու գործին պիտի օգնեն և ուրիշները:

Ես, օրինակ, հետևում եմ մեր գրականությանը, դիտում գյուղին նվիրված ֆիլմերը, ներկայացումները: Եվ օգտակար, հետաքրքրական շատ բան եմ գտնում: Բայց և տխրում եմ, նկատելով, որ որոշ հեղինակներ կա՛մ ըստ էության մենատնտես գյուղացու տեսանկյունից են վերաբերվում գյուղի պրոբլեմներին, կամ էլ ղեկավարվում են վերը նշված հին պատկերացումներով և երբեմն «անճարակ նախագահի», «գող պահեստապետի» «մերկացումից» ու «գյուղը դատարկվում է» անհիմն պնդումից այն կողմ չեն անցնում: Դա, ինչ խոսք, չի կարող նպաստել գյուղի, նրա աշխատավորների համարումը բարձրացնելուն:

Բայց հանրային տնտեսությունների աշխատողներիս ավելի տխրեցնում է այն անփույթ ու անպատասխանատու վերաբերմունքը, որ ցուցաբերվում է մեզ մոտ այնքան դժվարությամբ արտադրվող մթերքների, հատկապես՝ հացի նկատմամբ:

Վիրավորվում ես՝ տեսնելով փողոցում ընկած հացի կտորը (որ առաջ մեղք կհամարվեր), կամ երբ հանձնում ես ամենաբարձր որակի կաթնամթերք, բանջարեղեն, միրգ, իսկ խանութում տեսնում բոլորովին ոչ այն, ինչ տարել ես: Դե, պարզ է, ինչ-որ տեղ վատ են պահել, մշակել, ինչ-որ տեղ ջոկջոկել են, ինչ-որ տեղ փչացրել... Եվ ընկնում է հանրային տնտեսություններում արտադրված մթերքի հեղինակությունը, տարածվում է այն կարծիքը, թե բարձրորակ մթերք կարող է արտադրվել միայն օժանդակ տնտեսություններում...

Մի խոսքով, պրոբլեմներ շատ կան, և դրանց լուծումը կուսակցությունն այսօր առաջադրում է ողջ երկրին՝ իբրև առաջնային համաժողովրդական գործ...

**Խ. Ա. ԱՎԱԳՅԱՆ**

# ԱՌԱՋԻՆՆԵՐԻՑ ՄԵԿԸ

**Ֆ. Խ. ԱՀԱՐՈՆՅԱՆ**
**Ն. Վ. ՄԵԼԻՔՅԱՆ**

*ԵՐԵՎԱՆ—ԷՋՄԻԱԾԻՆ մայրուղու աջ ու ձախ կողմերում փռված բարետես ավանն իր բերքառատ այգիներով ու փարթամ ծառաստաններով վկան ու ակտիվ մասնակիցն է վերածնված Հայաստանի գյուղատնտեսության առաջընթացի: Այսօր արդեն դժվար է հանդիպել առաջին այն խանդավառ հայրենասերներին, որոնք իրենց բազկի ուժով ու աներեր կամքով դրեցին նոր տիպի տնտեսության հիմքերը: Նորաստեղծ Սովետական Հայաստանի առաջին սովխոզները, դրանք ընդամենը չորսն էին, անցան դժվարին ճանապարհ, ասպարեզ հարթելով սոցիալիստական տնտեսավարման համար: Այդ պիոներներից մեկը՝ № 3-ը, հիմնվեց գրեթե անջրդի ու անմշակ, կիսաանապատային հողատարածությունների վրա: Տասներկու հեկտար տերունական այգի՝ ահա կանաչ այն կղզյակը, որն անցյալից ժառանգություն ստացավ, որով սկսեց իր կենսագրությունը առաջիններից մեկը այն տնտեսություններից, որոնք կոչված էին հեղաբեկում մտցնել գյուղատնտեսության մեջ, դարերով տառապած գյուղատնտեսությունը տանել դեպի սոցիալիստական տնտեսավարում, սոցիալիստական կենցաղավարում...*

*Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան այս սովխոզը հիմա բարձր շահութաբեր տնտեսություն է, որի մշակելի բարեբեր հողերը հասնում են մոտ 800 հեկտարի: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ասպարեզում ձեռք բերած ակնառու հաջողությունների համար ու հիմնադրման 60-ամյակի առթիվ վերջերս տնտեսությունն արժանացավ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրի:*

*Սովխոզը անվանում են նաև խաղողի թանգարան բաց երկնքի տակ, որտեղ մշակվում են Հայաստանում տարածում գտած սորտերից երեք տասնյակը: Ժողովրդի հիշողությունը վկայում է, որ տնտեսության հիմնադրման առաջին իսկ օրերից հողի տերը դարձած աշխատավորները զգացել են բարեկամական ձեռքի ուժը: 1922 թվականին այստեղ Ղրիմից ստացվեցին խաղողի 60 հազար արմատակալներ, որոնցով Հայաստանում հիմք դրվեց սապերավի, մուսկաթ, համաշխարհային սելեկցիայի մյուս լավագույն սորտերի տարածմանը:*

*Ավանի տարեց մարդիկ լավ են հիշում նաև այն օրը, դա 1932 թվականի սեպտեմբերի 28-ին էր, երբ իրենց մոտ, երկրում առաջինը, փորձարկվեց խաղողի պլանտացիաների մշակության սովետական մասնագետների ստեղծած էլեկտրական առաջին գութանը:*

*Առաջին տարիներից իսկ ամրապնդվելով տնտեսապես և կազմակերպչորեն, նորաստեղծ սովխոզն այնուհետև դարձավ շրջապատի գյուղացիական անհատական տնտեսությունների լավագույն բարեկամն ու օգնականը: Սովխոզը նրանց տրամադրում էր սերմացու, տնկանյութեր, օժանդակում գյուղատնտեսական գործիքներով ու մեքենաներով, իր օրինակով վերափոխիչ դեր կատարում գյուղացիության շրջանում:*

*Դա՝ հիմնադրման առաջին տարիներին: Հետագայում ևս, երբ աստիճանաբար ամբողջ գյուղացիական տնտեսությունը փոխադրվեց հանրային ռելսերի վրա, № 3-ը չզիջեց իր դիրքերը, աճեց տարեցտարի, տասնամյակ առ*

Միկոյանի անվան սովխոզը բարձր շահութաբեր տնտեսություն է, որտեղ ներդրված յուրաքանչյուր ռուբլու հաշվով ստացվում է 1,4 ռուբլու եկամուտ։ Լավ աշխատանքը լավ էլ վարձատրվում է։ Աշխատավորների միջին ամսական աշխատավարձը կազմել է 180—200 ռուբլի, ըստ որում մեխանիզատորներին վճարվել է մինչև 400, անասնապահներին՝ 250—300 ռուբլի։ Իսկ լրացուցիչ ու պարգև-վարձատրությունն ընդամենը կազմել է մոտ 400 ռուբլի։

Պատահական չէ, որ աշխատողի պակաս այստեղ չեն զգում, որ արտահոսքն այստեղ պրոբլեմ չէ։ Ընդհակառակը, տարիներ առաջ ավանից հեռացած առանձին ընտանիքներ դիմում են վերադառնալու խնդրանքով։ Տնտեսության աշխատավորները սիրով կապված են իրենց հողին ու ջրին։

— Այսօր մեզ հուզում են այլ, ավելի լուրջ, ծանրակշիռ խնդիրներ, որոնք առաջադրվել են ՍՍՀՄ պարենային ծրագրով,— ասում է դիրեկտորը։— Ինչպես անել, որ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տանք հայրենիքին։ Հաշվի առնելով առկա հնարավորությունները և ռեզերվները, մեր տնտեսության մարդիկ վճռել են արդեն այս հնգամյակի վերջում պետությանը խաղողի հանձնման ծավալը հասցնել 5.000 տոննայի, պտղինը՝ 800 տոննայի։ Անասնապահության հետագա զարգացման համար ևս ռեալ հիմքեր կան, որոնց նպատակահարմար օգտագործումը թույլ կտա մինչև 1985 թվականը կովերի միջին կաթնատվությունը հասցնել 3.500, մթերման հանձնվող յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի քաշը՝ 400 կիլոգրամի։

— Այդ բնագծերի նվաճումը ո՛չ միայն պարտքի, այլև պատվի գործ է,— դիրեկտորի միտքը շարունակում է Վարդան Մկրտչյանը՝ № 6 բրիգադի առաջավոր բանվորներից մեկը, որը արժանացել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրի։ Նա իրավունք ունի այդպես արտահայտվելու։ Այն բրիգադը, որտեղ աշխատում է Մկրտչյանը, տասներորդ հնգամյակը կատարել է չորս տարում, իսկ անցած տարի մշակած 27 հեկտար այգիներից ապահովել է 162 ցենտներ միջին բերք։

— Այդ ցուցանիշը մենք կդարձնենք նորմա և կպայքարենք ավելի բարձր բնագծերի համար,— պնդում է այգեգործուհի Սեդա Գասպարյանը, որի լավ աշխատանքը նույնպես գնահատվել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրով։

Վաթսունամյա ճանապարհ անցած սովխոզի բանվոր-ծառայողները նոր նվիրումով ձեռնամուխ են եղել ավելի բարձր բնագծերի նվաճմանը, իրենց ավանդը բերելու ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացմանը։ Իսկ դրա համար նրանք ռեզերվներ ունեն ո՛չ միայն հանրային արտադրության ոլորտում։ Ինչ պակաս ռեզերվ են, ասենք, սովխոզի բանվոր-ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունները, որոնք զգալի տարածություն են զբաղեցնում։ Սակայն այստեղ ևս գտնվեցին մարդիկ, իսկ դրանք քիչ չէին— որ, տարված հարստանալու մարմաջով, այդ բարեբեր հողերը տրամադրեցին ծաղիկների աճեցմանը։

— Եվ միանգամայն ճիշտ վարվեց սովխոզի ղեկավարությունը, որ թույլ չտվեց տնամերձը վերածել ծաղկի ջերմոցների։ Մեր հողերը, որոնք պարենային մթերքների՝ բանջարեղենի, խաղողի ու պտղի բարձր բերք են ապահովում, չի կարելի չարաշահել։— Դիրեկտորի այս կարծիքը կիսում են տնտեսության մյուս հրամանատարները, արտադրության առաջավորները, նրանք, ովքեր իրենց եռանդը ներդնում են արտադրության ընդլայնմանն ու զարգացմանը։

Բայց նրանց այսօր մտահոգում է նաև մի այլ, ոչ պակաս կարևոր պրոբլեմ։ Մատների վրա կարելի է հաշվել նրանց, ովքեր կով են պահում։ Մինչդեռ այստեղ ապրում է մոտ 700 ընտանիք։

— Ետ են սովորել,— ասում է դիրեկտորը,— մոռացել են իրենց պապերի ավանդույթները։ Ճիշտ է, անասուն պահելը հեշտ գործ չէ, բայց հողի հետ կապված մարդը այնքան էլ իրավացի չէ, երբ չի մտահոգվում անասնապահական մթերքների նկատմամբ իր պահանջը սեփական արտադրությամբ բավարարելու հարցով։ Կերի հայթայթումը մեր պայմաններում ամենանեղ տեղերից մեկն է, բայց ցանկության դեպքում կարելի է հաղթահարել խոչընդոտները։ Հենց դրան էլ մեզ կոչում է կուսակցությունը։ Մեզ մոտ ևս, երկրի առաջավոր տնտեսությունների օրինակով, փորձ ենք անում գյուղի մարդկանց ներգրավել անասնապահական մթերքների արտադրության ոլորտը։ Զգալի թվով մատղաշ բաժանել ենք անհատ մարդկանց, նրանց տրամադրել ենք կեր, այլ միջոցներ կենդանիներին խնամելու, դրանք մեծ քաշով մթերման հանձնելու համար։ Դա առաջին փորձն է, և մենք մտադիր ենք այդ աշխատանքներն ընդլայնել, դնել ամուր հիմքերի վրա, դարձնել մսի արտադրության կարևոր ռեզերվ։ Ոչ պիտանի հողերից մի հատված տրամադրվել է սովխոզի բանվորներին՝ խոզաբուծության զարգացման համար։ Յուրաքանչյուր մեկ կիլոգրամ քաշաճի համար տնտեսությունը տալիս է մեկ կիլոգրամ խտացված կեր։ Արդեն աշնանը կմթերվի 7 տոննա միս։

ՍՍՀՄ պարենային ծրագրի օրգանական մասն են կազմում գյուղի սոցիալիստական վերակառուցման միջոցառումները, որոնք դիտվում են որպես գյուղացու կենսապայմանների բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոն։ Ղեկավարվելով կուսակցության ցուցումներով, Միկոյանի անվան սովխոզում քիչ գործ չի կատարվել տնամերձով հանդերձ բարեկարգ բնակարանների կառուցման, դպրոցական և նախադպրոցական ցանցի ընդլայնման, գյուղական բնակչության բժշկական, առևտրական և կենցաղային սպասարկման նպատակով։ Ավանն ունի տիպային նախագծերով կառուցված երկու դպրոցական շենք։ Սովխոզի ղեկավարությունն ըստ ամենայնի սատարում է երեխաների կրթության և դաստիարակության գործը ամուր հիմքերի վրա դնելու ջանքերին։ Երկու խոշոր մանկապարտեզները լիովին լուծել են երեխաներին մանկական հիմնարկություններում ամբողջապես ընդգրկելու հարցը։

Եթե այսօրվա բանավանը կառուցապատված է այգիների մեջ կորած երկհարկանի քարաշեն տներով, ապա դրանում ևս մեծ է սովխոզի դերը, որն ըստ ամենայնի աջակցել է կոլեկտիվի անդամներին՝ իրենց բնակարաններում հաստատելու կուլտուրական կենցաղ։ Հիմնովին լուծված է խմելու և ոռոգման ջրի հարցը. արագորեն կառուցվեց ջրատարը, բացված խորքային ջրհորներն ի սպաս դրվեցին նաև անձնական օժանդակ տնտեսություններին։

Բայց աններելի է, որ հանրապետության մայրաքաղաքից ընդամենը մի քանի կիլոմետր հեռավորության վրա գտնվող բանավանը զուրկ է կոյուղուց, որը չի կարող բացասաբար չանդրադառնալ նրա սանիտարական վիճակի վրա։ Մանավանդ որ այստեղ քիչ չեն նաև երկհարկանի բնակելի մեծ շենքերը, որոնք, ցավոք, զուրկ են կոմունալ հարմարություններից։ Իհարկե, մանր հարցեր չեն սրանք, և շահութաբերության նման մակարդակի հասած տնտեսության աշխատավորներն իրավունք ունեն ակնկալելու սպասարկման ավելի բարձր կուլտուրա։ Այդպես է մտածում նաև սովխոզի դերեկտորը՝ Հենրիկ Համբարձումյանը։ Կարելի է չտարակուսել, որ այդ ակնկալիքները նույնպես կիրականանան։

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՏՈՒՅԺԻ ՆԵՐԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

**Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ

ԵՐԲ ՄԱՐԴԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆՆ անդամագրվում է իր բանականության և համոզմունքների թելադրանքով ու սրտի կանչով, ապա կուսակցականի պարտքի ու պարտականությունների կատարումը նրա համար դառնում է բնականոն երևույթ, օրգանական պահանջ, սովորույթ։ Կուսակցական դաստիարակություն, համոզմունք ու կոփվածք ունեցող կոմունիստը, անկախ կյանքի փորձություններից ու ելևէջներից, միշտ և ամենուրեք աշխատում է բարձր պահել կոմունիստի վեհ կոչումն ու արժանապատվությունը, մշտապես գտնվում է պայքարի առաջին բնագծում, իր ակտիվ ու անձնուրաց գործունեությամբ օրինակ ծառայում շատերին։

Կոմունիստի հատկանիշները՝ գաղափարական խոր համոզվածությունը, կուսակցականությունը, կարգապահությունը, սկզբունքայնությունը, ակտիվությունը, թերությունների նկատմամբ անհաշտվողականությունը, գործնականությունն ու գործիմացությունը և այլն, միանգամից չէ, որ ի հայտ են գալիս, դառնում վարքագիծ և բնավորություն։ Այդ հատկանիշները ձեռք են բերվում կուսկազմակերպությունների տևական, համբերատար, հետևողական և նպատակասլաց դաստիարակչական աշխատանքի շնորհիվ, ինչպես նաև հղկվում ու մշակվում են իրենց իսկ կոմունիստների կողմից՝ ինքնադաստիարակության և ինքնակատարելագործման միջոցով։ Այդ երկու պրոցեսներն անբաժան են, քանի որ դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը մեծապես պայմանավորված է ո՛չ միայն դրա ներգործման ուժով, այլև դաստիարակվողի ակտիվությամբ ու պատրաստակամությամբ։

Հանգամանքների բերումով, սակայն, լիարժեք կուսակցական դաստիարակություն և կոփվածք ոչ բոլոր կոմունիստներն են ստանում։ Ահա այդ կարգի մարդիկ, անհրաժեշտ կուսակցական վերահսկողության և պահանջկոտության բացակայության պայմաններում, դրսևորում են անկայունություն, անկազմակերպվածություն, անպատասխանատվություն, խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը, արատավորում կուսակցականի անունը։ Դրա հետ մեկտեղ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, սովետական ժողովրդի առաջավոր ներկայացուցիչների հետ միասին երբեմն կուսշարքերն են ընդունվում պատահական, անարժան մարդիկ, որոնք արատավորում են կոմունիստի վեհ կոչումը։ Համագումարն ամենայն սրությամբ շեշտեց, որ մեր վերաբերմունքը նրանց նկատմամբ, ովքեր իրենց անվայել են պահում, խախտում են կուսակցության կանոնադրությունն ու կուսակցական բարոյականության նորմերը, եղել է և կլինի անհաշտ։ Ոչ մի ավելորդ ներողամտություն և ոչ ոքի նկատմամբ, երբ խոսքը վերաբերում է մեր կուսակցության պատվին ու հեղինակությանը, նրա շարքերի անաղարտությանը։



Կուսակցական տույժերը սահմանվում են մի կողմից՝ որոշ կոմունիստների վերադաստիարակման, մյուս կողմից՝ կուսշարքերի անաղարտության պահպանման, նրանց միասնության ու համախմբվածության ապահովման համար։

Կուսակցական տույժի ողջ իմաստը նրա դաստիարակչական նշանակության մեջ է, այն բանում, որ պատիժը լինի միանգամայն արդարացի և հիմնավորված, համապատասխանի կոնկրետ արարքին ու նրա հետևանքներին, լինի անխուսափելի՝ անկախ անձնավորության դեմքից ու դիրքից։ Այս պայմանների առկայության դեպքում է, որ, պատժելով մեկին, մենք տասնյակ և հարյուրավոր մարդկանց ետ ենք պահում նման արարքից, մղում նրանց դեպի օրինակելի վարքագծի ուղին։ Իսկ եթե պատիժը վերածվում է վրիժառության, վերածվում անձնական հաշիվներ մաքրելու միջոցի, ապա այն ընդհանուր ոչինչ չունի ՍՄԿԿ կանոնադրության պահանջների հետ. դա արդեն ո՛չ միայն անթույլատրելի, այլև խորապես վնասակար է։

ՍՄԿԿ կանոնադրությունը սահմանում է, որ աննշան զանցանքների համար հարկ չկա դիմելու խստագույն պատժամիջոցների։ Այդպիսի պարագաներում պետք է կիրառվեն կուսակցական դաստիարակության ու ներգործության այնպիսի միջոցներ, ինչպիսիք են ընկերական քննադատությունը, կուսակցական հանդիմանությունը, նախազգուշացումը կամ մատնացույց անելը։ Նման մոտեցումը հնարավորություն է ընձեռում կոմունիստի սխալներն ու վրիպումները տեսնել սաղմնային վիճակում և ակտիվ միջամտությամբ կանխել, հաղթահարել դրանք։ Հենց դրանից էլ սկսվում է կարգապահության խախտման պրոֆիլակտիկան։

Անհարկի խստապահանջությունը, յուրաքանչյուր աննշան զանցանքի համար խստորեն տուժարկելը ճիշտ չէ, քանի որ այն միայն խանգարում է գործին, ստեղծում նյարդային վիճակ, վախի և անվստահության մթնոլորտ։

Կուսակցական կարգապահության հիմքը ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ կատարումն է, առանց որի խոսք չի կարող լինել կուսակցականության, բարձր կազմակերպվածության և պատասխանատվության մասին։ Կոմունիստի ճիշտ դաստիարակության, նրա ակտիվության ու նախաձեռնության զարգացման ողջ կոմպլեքսի ապահովումը հնարավոր է միայն այն ժամանակ, երբ իրականացվում է կայուն և մշտական վերահսկողություն ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման նկատմամբ։ Ահա թե ինչու այդ խնդիրը միշտ և ամենուրեք պետք է գտնվի մեր բոլոր կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Սա ես պրոֆիլակտիկայի չափազանց արդյունավետ միջոց է։

ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության պահանջների, ինչպես նաև կոմունիստական բարոյականության նորմերի կատարման գործում թերանալը դիտվում է որպես կուսակցական կարգապահության և էթիկայի կոպիտ խախտում, որի համար կոմունիստը ենթարկվում է կուսակցական պատասխանատվության՝ ընդհուպ մինչև կուսշարքերից վտարումը։

Միաժամանակ ՍՄԿԿ կանոնադրությունը պահանջում է կուսակցությունից վտարելու հարցը լուծելիս ապահովել առավելագույն ուշադրություն և մանրակրկիտ քննարկել կոմունիստին ներկայացված մեղադրանքների հիմնավորվածությունը։ Վերջին տարիների փորձը ցույց է տալիս, որ Հայաստանի կոմկուսի շատ քաղկոմներ ու շրջկոմներ, ինչպես նաև սկզբնական կուսկազմակերպություններ կոմունիստների անհատական գործերը քննարկելիս խստորեն առաջնորդվում են ՍՄԿԿ կանոնադրության նշված պահանջներով, կուսակցական աշխատանքի համոզման մեթոդը ճշտորեն զուգորդում են կուսակցական հարկադրանքի հետ, որպես կանոն, կուսակցական ու պետական կարգապահության խախտման փաստերին և կոմունիստների մյուս սխալ արարքներին տալիս են սկզբունքային կուսակցական գնահատական։ Դրա շնորհիվ տեղերում ստեղծվում է առողջ բարոյահոգեբանական մթնոլորտ, բարձրանում է կոմունիստների և աշխատավորության կոմունիստական դաստիարակության արդյունավետությունը։

ՀԿԿ Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմներին, Սովետական, 26

Շատ կուսակցական կազմակերպություններ, կոմունիստների անհատական գործերը քննարկելիս, հետևողականորեն ղեկավարվում են ՍՄԿԿ կանոնադրության այն պահանջով, որ եթե կուսակցության անդամը կատարել է քրեականորեն պատժելի արարք, ապա նա վտարվում է կուսակցությունից և ենթարկվում պատասխանատվության՝ օրենքին համապատասխան։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կուսշարքերից վտարված կոմունիստների ճնշող մեծամասնությունն այդ բարձրագույն կուսակցական պատժին արժանանանում է դատվածության պատճառով, որ կուսակցական կազմակերպությունները հիմնականում ճիշտ են կատարում ՍՄԿԿ կանոնադրության այդ կարևոր պահանջը։ Միաժամանակ փաստերը վկայում են, որ առանձին կազմակերպություններ երբեմն նահանջում են կանոնադրական այդ պահանջից։ 1980—1981 թթ. այդպիսի փաստերի տեղիք են տվել Լենինականի և Դիլիջանի քաղկոմները, Թումանյանի, Վարդենիսի, Շամշադինի, Արագածի, Արտաշատի շրջկոմները։ Ոմանք այդ սխալ պրակտիկան փորձում են «արդարացնել» հումանիստական, մարդասիրական, զգայուն վերաբերմունքի դիրքերից, մոռանալով, սակայն, որ չարիքը ներելը նույնպիսի հանցանք է, ինչպես այն կատարելը։

Սխալը, վրիպումը կարելի է ներել, մանավանդ երբ կոմունիստն ընդունում է դրանք, խորապես զղջում է իր սխալ արարքի համար և անկեղծորեն խոստանում շտկել, ուղղել։ Սխալը կարելի է ներել, հանցանքը՝ երբեք։

Բացահայտ սխալ է նաև այն պրակտիկան, երբ առանձին կուսկազմակերպություններ քրեական հանցագործություն կատարած կոմունիստների հարցը քննարկում են ոչ թե արարքից անմիջապես հետո, այլ դատական մարմինների որոշումներից հետո, դրանով իսկ իրենց որոշումները կախման մեջ դնելով վարչական մարմինների վճիռներից։ Քրեականորեն պատժելի արարք կատարելու համար կոմունիստն ամենից առաջ պետք է կանգնի կուսակցական դատարանի, իր ընկերների դատի առջև, ապա նոր միայն պատասխան տա ժողովրդական դատարանին։ Այդ ընդունված կարգից շեղումներ կարող է լինել միայն առանձին, բացառիկ, այն էլ բարդ, խճճված գործերի դեպքում։

ՍՄԿԿ կանոնադրությունը սահմանում է, որ կոմունիստին կուսակցությունից վտարելու հարցը վճռում է սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովը, և այդ որոշումը ուժ է ստանում կուսակցության շրջկոմի կամ քաղկոմի հաստատելուց հետո։ Սահմանված այս կարգը ելնում է այն իրողությունից, որ կուսակցության հիմքը սկզբնական կուսկազմակերպություններն են, որ կոմունիստն իր արարքի ու վարքի համար ամենից առաջ պատասխան պետք է տա իր կուսակցական ընկերներին, իր աշխատանքային կոլեկտիվին, որոնք գիտեն ու ճանաչում են յուրաքանչյուր կոմունիստի շատ ավելի լավ, քան վերադաս կուսակցական մարմինները։

Այդ կարգը նաև կուսակցական դեմոկրատիայի, սկզբնական կուսկազմակերպությունների որոշումների նկատմամբ հարգալից վերաբերմունքի լենինյան պահանջների իրականացման արտահայտությունն է։ Հայտնի է, որ 1921 թ. դեկտեմբերին Վ. Ի. Լենինը հատուկ նամակով դիմել է կուսշարքերի ստուգման և զտման Մոսկվայի նահանգային հանձնաժողովին մի կոմունիստի վերաբերյալ, որին շրջանային հանձնաժողովը վտարել էր կուսշարքերից՝ առանց հաշվի առնելու կուսբջջի կարծիքը և առանց զրուցելու այն կոմունիստների հետ, ովքեր երկար տարիներ և մոտիկից ճանաչել են տվյալ անձնավորությանը։ Այդ նամակում Վ. Ի. Լենինը խորհուրդ է տալիս անհատական մոտեցում դրսևորել յուրաքանչյուր կոմունիստի նկատմամբ, բազմակողմանիորեն, օբյեկտիվորեն ստուգել կոմունիստին առաջադրված մեղադրանքների ճշտությունն ու հիմնավորվածությունը, ստուգել ձեռք բերված փաստերի իսկությունն ու նրանց աղբյուրները, հարցի քննարկման ժամանակ ապահովել այն ընկերների մասնակցությունը, ովքեր լավ գիտեն և մոտիկից ճանաչում են մեղադրվողին, վերհանել գործի ծագման շարժառիթները, բացառել պրովոկացիան, զրպարտանքը, լրջորեն կշռադատել բոլոր հանգամանքները, որպեսզի առանձին սխալներ ստվեր չգցեն կոմունիստի լավ հատկանիշների և արժանիքների վրա, չկորցնել հավատը մարդու նկատմամբ, լինել բարյացակամ,



գործի քննարկման ժամանակ դրսևորել օպերատիվություն, առանձնահատուկ վստահություն և հարգանք ցուցաբերել կուսկազմակերպության և նրա որոշումների նկատմամբ (տե՛ս ПСС, т. 54, стр. 52—55)։

Այս պահանջների լույսի ներքո առավել անհանդուրժելի է այն պրակտի-
կան, երբ մեր մի շարք քաղկոմ-շրջկոմներ, կոմունիստների անհատական
գործերը քննարկելիս, շրջանցում են սկզբնական կուսկազմակերպություննե-
րին, ոչ քիչ թվով կոմունիստների, առանձնապես ղեկավար աշխատողների,
կուսակցական պատասխանատվության են ենթարկում անմիջականորեն իրենք։
Դրանով փաստորեն հեռու են պահում նրանց ներքևից եկող քննադատությու-
նից։ Այդ պրակտիկան համեմատաբար լայն կիրառում ունի կուսակցության
Երևանի շրջանային կոմիտեներում, ինչպես նաև Գորիսի, Մարտունու և Սպի-
տակի շրջկոմներում։

Այո, կադրերի, ղեկավար աշխատողների նկատմամբ պետք է լինել և՛
ուշադիր և՛ հոգատար, քանի որ այդպիսի կադրեր պատրաստելը տասնյակ
տարիների գործ է, մինչդեռ նրանց կորցնելու համար մի քանի ժամն էլ բա-
վական է։ Միաժամանակ ավելորդ խնամակալությունը, չարդարացված ուշա-
դրությունն ու հոգատարությունը ոչ մի լավ բան չեն խոստանում։

Մեր ղեկավար կադրերի մի զգալի մասը վերևից եկող քննադատությունը
պատշաճ կերպով է ընդունում, մինչդեռ ներքևից եկող քննադատությանը
սովոր չէ, այն հաճախ ընկալում է որպես անձնական վիրավորանք։ Այսպիսի
սովոր չէ, այն հաճախ ընկալում է որպես անձնական վիրավորանք։ Այսպիսի
ղեկավար աշխատողներին ժամանակին լավ է ծաղրել Վ. Մայակովսկին՝ նշե-
լով, որ նրանց համար քննադատությունը վերևից մանանա է, քննադատու-
թյունը ներքևից՝ արժանի սվիններ։

Խիստ դատապարտելի է, երբ, առանձին դեպքերում կոմունիստներին կու-
սակցական պատժի ենթարկելիս, առանձին կուսակցական կոմիտեներ իրենց
որոշումների մասին սահմանված կարգով տեղյակ չեն պահում սկզբնական
կուսկազմակերպություններին։ Որոշ կուսակցական կոմիտեներ էլ գերագնա-
հատում են կուսակցական տույժերի դերը, կուսակցական հարկադրանքը սեր-
տորեն չեն զուգակցում կուսակցական-կազմակերպական և քաղաքական-դաս-
տիարակչական աշխատանքի ողջ համակարգի հետ, երբեմն պատիժները
շարվում են պիտակների նման, դրանով իսկ կորցնում իրենց ուժն ու ներ-
գործությունը, արժեզրկվում։ ՀԿԿ Մարտունու շրջկոմը 1981 թ. երկուական
անգամ կուսակցական տույժերի է ենթարկել շրջանի Գեղհովիտի, Լիճքի, Արծ-
վանիստի սովխոզների դիրեկտորներ Ա. Եղիազարյանին, Ու. Բաղդասարյա-
նին, Ֆ. Մալխասյանին, ինչպես նաև Գեղհովիտի և Արծվանիստի սովխոզային
կուսկազմակերպությունների քարտուղարներ Վ. Մարտիրոսյանին և Լ. Ղա-
րիբյանին։ Աշխատանքի այդ ոճը ոչ հեռու անցյալում հատուկ էր նաև ՀԿԿ
Սպիտակի և Գորիսի շրջկոմներին։

Սկզբնական կուսկազմակերպությունները, քաղաքային և շրջանային կո-
միտեները, առանձնապես նրանց կուսհանձնաժողովները պարտավոր են լուրջ
և նպատակասլաց աշխատանք տանել կուսակցական տույժ ունեցող կոմու-
նիստների հետ, օգնել նրանց՝ ուղղելու իրենց կատարած սխալներն ու վրի-
պումները։ Շատ սկզբնական կուսկազմակերպություններ կուսակցական տույժ
ունեցող կոմունիստների հետ անցկացնում են անկեղծ ընկերական զրույցներ,
նրանց տալիս են զանազան կուսակցական հանձնարարություններ, սահման-
ված ժամկետներում կուսժողովներում քննարկում են նրանց հաշվետվու-
թյունները և, համոզվելով, որ կոմունիստը պատշաճ հետևություն է արել կու-
սակցական տույժից, որոշում են ընդունում կուսակցական տույժերը վերաց-
նելու մասին։

Կուսակցական տույժ ունեցող կոմունիստները խորթություն և մեկուսա-
ցածություն, առավել ևս անվստահություն չպետք է զգան։ Ընդհակառակը,
նրանք պետք է համոզված լինեն այն բանում, որ ընկերները թեպետև պատ-
ժել են իրենց, սակայն չեն մոռացել, տեսադաշտից դուրս չեն թողել, անուշա-
դրության չեն մատնել։ Չպետք է մոռանալ նաև, որ այսպիսի պարագաներում
մարդիկ դառնում են խիստ նրբանկատ և նրբազգաց, ջերմորեն են ընդառա-
ջում և արձագանքում յուրաքանչյուր անկեղծ միջամտությանն ու օգնությանը։

սակցությունից, որ հանգամանքների բերումով նման արարք է կատարել։ Հաշվի առնելով այդ ամենը և Վ. Պողոսի դրական բնութագիրը՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն ներեց նրան և թողեց կուսշարքերում՝ տալով կուսակցական խիստ տույժ։ Այդ տույժը նա կրեց մի քանի տարի, համարելով, որ իր համար դա ոչ թե պատիժ է, այլ կուսակցության մեծահոգության և վստահության արտահայտություն։ Այդ վստահությունը կարծես թևավորեց կոմունիստին։ Աշխատանքում, հասարակական-քաղաքական կյանքում, ամենուրեք նա դրսևորեց իրեն որպես օրինակելի կոմունիստ, իսկ վերջերս առաջ քաշվեց պատասխանատու աշխատանքի։

Մեկ այլ օրինակ։ 1981 թ. սկզբներին ՀԿԿ Արտաշատի շրջկոմը կուսշարքերից վտարեց Մ. Արզումանյանին՝ կոմունիստին անվայել արարք կատարելու, պետական կարգապահությունը խախտելու և դատվածության համար։ Մ. Արզումանյանի բողոքարկման դիմումը քննարկելիս պարզվեց, որ նրա բնակարանում հայտնաբերվել է փոքր տրամաչափի հրացանի 65 փամփուշտ, որոնք մնացել են դեռևս 1977 թվականից, երբ նա ԴՈՍԱԱՖ-ի սկզբնական կազմակերպության նախագահ էր և փամփուշտներ էր ստացել՝ կազմակերպության կարիքների համար։ 1980 թ. հոկտեմբերին Արտաշատի ժողովրդական դատարանը, ապօրինաբար զինամթերք պահելու համար, նրան դատապարտում է ազատազրկման, որը փոխարինվում է մեկ տարվա պայմանական դատվածության, իսկ ՀՍՍՀ Գերագույն դատարանը այդ վճիռը թողնում է ուժի մեջ։

Սակայն, ինչպես դատական պրոցեսում, այնպես էլ նրա անհատական հարցը քննարկելիս, հաշվի չեն առնվել Մ. Արզումանյանի անձը, նրա կատարած արարքի նվազ ծանրությունը և այլ հանգամանքներ։ Մ. Արզումանյանը երկար տարիներ եղել է տրակտորիստ, տրակտորային բրիգադի բրիգադավար։ Նա միաժամանակ որսորդ է և որսի ժամանակ ցուցաբերել է արիություն՝ վնասազերծելով ՍՍՀՄ պետական սահմանը խախտողին, որի համար արժանացել է կառավարական պարգևի։ Հաշվի առնելով նշված հանգամանքները՝ Մ. Արզումանյանի անհատական գործը վերադարձվեց ՀԿԿ Արտաշատի շրջկոմին՝ նոր քննության, և նա վերականգնվեց կուսշարքերում։

Կուսակցության մեջ վերականգնվելը դժվար է, բայց ոչ անհնարին։ Կուսակցական մարմինները, կուսշարքերից վտարվածների բողոքարկման դիմումները քննարկելիս, երբեմն ներում են նրանց արարքը և ոմանց վերականգնում կուսշարքերում, եթե նրանք պատշաճ հետևություններ են արել իրենց վերաբերյալ ընդունված որոշումներից և իրենց քրտնաջան աշխատանքով ու անբասիր վարքագծով նվաճել են այդ իրավունքը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կուսշարքերում վերականգնվածները, որպես կանոն, բարեխղճությամբ են կատարում իրենց պարտականությունները աշխատանքում և հասարակական-քաղաքական կյանքում, ձգտում են ամեն կերպ արդարացնել իրենց նկատմամբ ցուցաբերած վստահությունը։

Կուսակցական տույժի դաստիարակչական նշանակությունը մեծապես պայմանավորված է նրա հրապարակայնությամբ։ Ճիշտ են վարվում այն կոմիտեները, որոնք սուր, կոնֆլիկտային բնույթի հարցեր քննարկելիս կուսակցական մամուլի էջերում լիարժեք ինֆորմացիաներ են զետեղում այդ մասին կամ համապատասխան հաղորդումներ տալիս կուսակցական ակտիվին։

Բոլոր նրանք, ովքեր ոչ թե խոսքով, այլ իրականում են շահագրգռված կոլեկտիվներում տիրող քաղաքական և բարոյահոգեբանական մթնոլորտը մշտապես առողջացնելու և առողջ վիճակում պահելու հարցով, բոլոր նրանք, ում համար կարգապահությունը, կազմակերպվածությունը ոչ թե կոչ, լոզունգ, բարի ցանկություն է, այլ ծանրակշիռ պարտականություն, պետք է հմտորեն զուգակցեն կուսակցական աշխատանքի համոզման փորձված մեթոդը կուսակցական հարկադրանքի հետ և այն ծառայեցնեն կուսշարքերի անաղարտության պահպանման ու դրանց մարտունակության բարձրացման նպատակին։

---

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՀՄԱՆՆԵՐ ՉՈՒՆԻ

**Հ. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի քաղկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ (Ա)ՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ, երբ սովետական բազմազգ ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ կենսագործում է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, լուծում տնտեսական և սոցիալական զարգացման վիթխարի խնդիրները, անչափ կարևորվում է աշխատավորությանը ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործը։

Ինտերնացիոնալիզմն այսօր դարձել է մեր երկրի բոլոր աշխատավորների գաղափարախոսությունը, կոմունիստական կուսակցության և սովետական պետության քաղաքականության ու պրակտիկ գործունեության բաղկացուցիչ մասը, վերածվել սովետական մարդու առօրյա գործունեության նորմի, ավելին՝ դարձել է հոգեբանություն, ներթափանցել հույզերի աշխարհը։

Սովետական հայրենասիրությունը նոր հասարակություն կերտող մարդու բնորոշ հատկությունն է։ Սոցիալական լավատեսությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը, մասնագիտական նվիրվածությունը, կոլեկտիվիզմը, սոցիալիստական ամուր կարգապահությունը հիմնված են սովետական մարդու հայրենասիրական գիտակցականության, զգացմունքների վրա։ ՍՍՀՄ սահմանադրությունը հռչակում է, որ զարգացած սոցիալիզմը «հայրենասեր և ինտերնացիոնալիստ աշխատավորների բարձր կազմակերպվածության, գաղափարայնության և գիտակցականության հասարակություն է»։

Սովետական մարդկանց ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը միշտ գտնվել է մեր կուսակցության ուշադրության կենտրոնում, համարվել նրա գործունեության գլխավոր խնդիրներից մեկը։

Կիրովական քաղաքի կուսկազմակերպությունը մշտապես ձգտում է արդյունավետ կերպով լուծել քաղաքի աշխատավորության՝ ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության հարցերը։ ՀԿԿ քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները ղեկավարվում են այդ կարևորագույն հարցի վերաբերյալ մեր կուսակցության ընդունած որոշումներով և պահանջներով։ Մենք ելնում ենք «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. ապրիլի 26-ի որոշման այն կարևոր դրույթից, որ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջուկը եղել և մնում է սովետական մարդկանց մեջ գիտական աշխարհայացքի, կուսակցության գործին, կոմունիստական իդեալներին անսահման նվիրվածության, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ձևավորումը»։

Քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության դաստիարակության գործը վարում են սիստեմատիկ և պլանավորված ձևով։ Նրանց մշակած ընթացիկ ու հեռանկարային պլաններում նախատեսվում են ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության հարցերը։ Վերջին տարիներին քաղկոմը մի քանի անգամ

անդրադարձել է այդ խնդիրներին: Դրանց վերաբերող մի շարք հարցեր են քննարկվել քաղկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում, մշակվել են միջոցառումներ քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններում գաղափարաքաղաքական, այդ թվում ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության աշխատանքը բարելավելու համար:

Լավ արդյունք են տալիս կուսկոմիտեների հաշվետվությունների քննարկումները քաղկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում: Այս տարվա սկզբին քաղկոմի բյուրոն լսեց քիմիական մանրաթելի գործարանի կուսկոմիտեի հաշվետվությունը ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կոլեկտիվի հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով տարվող աշխատանքի վերաբերյալ: Այստեղ աշխատում են մեր երկրի տասը ազգությունների ներկայացուցիչներ: Տարբեր ազգությունների բանվորների համատեղ աշխատանքի, կուսկազմակերպության ծավալած գաղափարադաստիարակչական արդյունավետ գործունեության շնորհիվ ձևավորվել է մի համերաշխ ընտանիք: Բոլոր աշխատողներին միավորում է այն գիտակցությունը, որ իրենք կոլեկտիվի իրավահավասար անդամներ են, իրենց ձեռնարկության տերերը, որ ամեն մեկի արժանիքը որոշվում է ոչ թե ազգային պատկանելությամբ, այլ ընդհանուր գործում ներդրած ավանդով:

ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԵՎ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ դաստիարակության հիանալի դպրոց է սոցիալիստական մրցությունը: Գործարանի կոլեկտիվը մրցում է Սերպուխովի, Կաունասի, Ֆերգանայի քիմիական մանրաթելի գործարանների կոլեկտիվների հետ: Եռամսյակը մեկ ամփոփվում են պլան-պարտավորությունների կատարման արդյունքները, իսկ տարեկան արդյունքները հանրագումարի են բերվում փոխադարձ այցելությունների ընթացքում: Ընդ որում մրցությունն ուղեկցվում է տնտեսական օգնությամբ, տեխնիկական նորությունների, գծագրերի, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի փոխանակմամբ: Վերջերս այդ ամենին ավելացել են սպորտային միջոցառումները:

Մրցակիցների մերձեցման և, հետևաբար, բարեկամության ամրապնդման գործում հատկապես վճռորոշ դեր է խաղում առաջավոր փորձի փոխանակումը: Գործարանում լույս են ընծայվում «Առաջավոր փորձը՝ քիմիական արդյունաբերության աշխատողներին» թերթիկները, առաջավորներն արժանանում են «Լավագույն բանվոր՝ ըստ մասնագիտության» մրցույթի հաղթողի կրծքանշանի: Արտադրության առաջավորներից շատերն արժանացել են Հոկտեմբերյան հեղափոխության տարելիցների պատվին ծավալված մրցության դափնեկրի կոչման: Նրանց առաջավոր փորձը ուսումնասիրում և ընդօրինակում են մըրցակից ձեռնարկությունների բանվորները: Մրցակիցներն արմատավորել են մանող արտադրամասի բանվորուհի, ՍՄԿԿ անդամ Լիդա Հովհաննիսյանի փորձը: Կոլեկտիվի անդամներից Սիրուշ Խառատյանը ոլորող բանվորուհիների համամիութենական մրցությունում գրավել է առաջին տեղը: Նրա փորձի մասին տպագրվել է «Սոյուզքիմվոլոկնո» միավորման տեղեկագրում: Գործարանում ստեղծվել է ինտերնացիոնալ բարեկամության ակումբ, որի ակտիվ գործունեության շնորհիվ բանվորները հանգամանորեն ծանոթանում են եղբայրական հանրապետությունների ժողովուրդների կյանքին: Այդ իրազեկությանը նպաստում են «Ճանաչիր քո հայրենիքը» նշանաբանով պարբերաբար կազմակերպվող երեկոները:

Ինտերնացիոնալ դաստիարակության վճռական գործոն է բարեկամական մրցությունը: Տարիներ ի վեր Կիրովականը սերտ կապերի մեջ է եղբայրական Վրաստանի և Ադրբեջանի Բաթում, Սուխում և Սումգաիթ քաղաքների հետ: Աշխատավորների ավանդույթ դարձած սոցիալիստական մրցությունը եղբայրական համագործակցության կոնկրետ արտահայտությունն է, լենինյան ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ: Մրցակից քաղաքների պատվիրակները փոխադարձաբար այցելում են միմյանց, ծանոթանում կոլեկտիվների գործերին, համակողմանի օգնության ձեռք պարզում մեկ մեկու: Սոցիալիստական մրցությունը, փոխայցելությունները, նամակագրությունները դարձել են ինտերնացիոնալ կապերի ամրապնդման լավագույն միջոցներ: Ամեն ինչ արվում է այդ կապերն անքակտելի և մրցությունն արդյունավետ դարձնելու



համար: Որպես դրա վկայություն՝ կուսակցության քաղաքային կոմիտեն և քաղաքային սովետի գործադիր կոմիտեն սահմանել են Կիրովական—Սումգաիթ, Կիրովական—Սուխում, Կիրովական—Ռուսթավի, Կիրովական—Բաթում փոխանցիկ կարմիր դրոշներ, որոնցով պարգևատրվում են սոցիալիստական մրցությունում հաղթանակած կոլեկտիվները: Այս տարի այդ դրոշները շնորհվեցին «Ավտոմատիկա», ավտոգենային մեքենաշինության, ճշգրիտ հաստոցների գործարանների և կարի արտադրական միավորման կոլեկտիվներին:

Ամուր բարեկամության արտահայտություն է և այն, որ մրցակից քաղաքների մի քանի փողոցներ կոչվում են «Կիրովական» անունով, իսկ Կիրովական քաղաքում կան Բաթումի և Նիզամու անվան փողոցներ:

Քաղաքի կուսկազմակերպությունները անչափ կարևորում են մասսայական պրոպագանդայի ձևերը: Այդ համակարգում իր ուրույն տեղն ունի դասախոսական պրոպագանդան: Դասախոսությունների պլանավորման ժամանակ մեծ տեղ է տրվում հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությանը վերաբերող թեմաներին, կոլեկտիվների առանձնահատկություններին:

ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՆԵՐԱԶԴՄԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ պայմանավորվում է նաև միջոցառումների բազմազանությամբ: Դա ուժեղացնում է մարդկանց հետաքրքրասիրությունը, ընդլայնում նրանց շփման ու հաղորդակցման շրջանակները: Այդ առումով լավ արդյունք է տալիս քաղաքական-գեղարվեստական շաբաթների անցկացումը: Աշխատանքի այդ ձևը ծնունդ առավ 1979 թվականին կուսքաղկոմի և «Գիտելիք» ընկերության վարչության նախաձեռնությամբ: Ո՞րն է դրա էությունը: Ընտրում ենք որոշակի շաբաթ, և շաբաթվա բոլոր օրերին աշխատավորներն ունկնդրում են դասախոսություններ՝ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումների, մեր հայրենիքի առօրյայի վերաբերյալ: Որպես կանոն, դասախոսություններն ուղեկցվում են ինքնագործ խմբերի համերգներով: Կատարվում են մեր երկրի ժողովուրդների երգեր ու պարեր:

Հետաքրքրական է քաղաքի դպրոցներում, տեխնիկումներում և մյուս ուսումնական հաստատություններում մատաղ սերնդին, սովորողներին հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու նպատակով կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների ձեռնարկած աշխատանքը: Այստեղ կիրառվում են դաստիարակության բազմազան ձևեր, կազմակերպվում են նպատակային էքսկուրսիաներ դեպի ձեռնարկությունները, արշավներ՝ սովետական ժողովրդի մարտական ու հեղափոխական փառքի վայրերով, այցելություններ՝ թանգարաններ, անցկացվում են ինտերնացիոնալ երեկույթներ, կինոֆիլմերի քննարկումներ, լինում են փոխադարձ այցելություններ, աշխույժ նամակագրական կապ է հաստատված եղբայրական հանրապետությունների դպրոցականների հետ:

Քաղաքի դպրոցների մեծ մասում գործում են ինտերնացիոնալ բարեկամության ակումբներ: № 3 գիշերօթիկ դպրոցի աշակերտները դարձել են Ուլյանովսկ քաղաքի գիշերօթիկ դպրոցի, № 7 դպրոցի աշակերտները՝ Սումգաիթի, № 23 դպրոցինը՝ Կիրովաբադի դպրոցների աշակերտների իսկական բարեկամները: Հանդիպումների ժամանակ դպրոցների ղեկավարները հանդես են գալիս զրույց-զեկուցումներով, միմյանց ծանոթացնում իրենց նվաճումներին:

Դպրոցներում չեն բավարարվում միայն միջոցառումներ կազմակերպելով: Այստեղ կուսկազմակերպությունները, մանկավարժական կոլեկտիվները լուրջ ուշադրություն են նվիրում այն բանին, որ հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության գործը հմտորեն կազմակերպվի և՛ ուսումնական պրոցեսում, և՛ արտադասարանական աշխատանքի ընթացքում: Աշակերտների համար անցկացվում են միութենական հանրապետություններին նվիրված երեկոներ, զրույց-զեկուցումներ: Նրանք մշակում են ճանապարհորդությունների երթուղիներ: Ուսուցիչները դասապրոցեսում շեշտը դնում են հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության հարցի վրա: Նրանք լավ գիտեն, որ մարդիկ ինտերնացիոնալիստ և հայրենասեր չեն ծնվում, այլ

այդպիսին դառնում են միջավայրի ազդեցությամբ, դաստիարակության միջոցով, իսկ դրա համար անհրաժեշտ է ամենօրյա դաստիարակչական աշխատանք, որը հիմնականում սկսվում է դպրոցից։

Կուսակցության քաղաքային կոմիտեն դպրոցների, բոլոր ուսումնական հաստատությունների կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը բևեռել է այն հարցի վրա, որ ինտերնացիոնալ դաստիարակության շատ պրոբլեմների լուծման բանալին ռուսերենի խոր իմացությունն է։ Աճել են ռուսաց լեզվի ուսումնասիրելու պահանջը և ձգտումը։ Մեր ժողովրդի համար այն վաղուց դարձել է բարեկամության, խաղաղ ստեղծագործության խորհրդանիշ։ Սակայն ռուսաց լեզվի դասավանդման մակարդակը քաղաքի դպրոցներում դեռևս չի համապատասխանում մեր օրերի պահանջներին։ Նկատի ունենալով այդ՝ կուսակցության քաղաքային կոմիտեն ուսումնասիրեց ռուսաց լեզվի դասավանդման և ուսումնասիրության դրվածքը քաղաքի հանրակրթական դպրոցներում, հարցը քննարկվեց քաղկոմի բյուրոյի նիստում։ Կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում՝ բարելավելու ռուսաց լեզուն դասավանդող ուսուցիչների որակական կազմը։ Այդ նպատակով ավելացվել է կաբինետների քանակը, ուժեղացվել են արտադասարանական աշխատանքները։ Կազմակերպվում են ռուսաց լեզվի օրեր, դպրոցների մի մասը մշտական նամակագրական կապեր ունի երկրի տարբեր քաղաքների դպրոցների հետ, որը և նպաստում է սովորողների ինտերնացիոնալ դաստիարակությանը և սեր առաջացնում ռուսաց լեզվի նկատմամբ։

Ռուս ժողովրդի հետ բարեկամության ամրապնդման լավ միջոց է քաղաքում գործող հայ և ռուս ժողովուրդների բարեկամության թանգարանը։ Այն հիմնադրվեց Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակի տոնակատարության առթիվ։

ՔԱՂԱՔԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆԸ, արտադրության մարդկանց ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով դաստիարակելու գործում վճռական է աշխատանքի դերը։ Գաղափարական, կազմակերպական, տնտեսական լծակները նպատակամղվում են այն բանին, որ ձեռնարկությունների կոլեկտիվների բոլոր անդամները ճիշտ ընկալեն իրենց հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքը։ Մեր երկրի 300 քաղաքներ ու շրջաններ ստանում են Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների արտադրանքը, իսկ տասնյակ արտադրատեսակներ ուղարկվում են արտասահմանյան 40-ից ավելի երկրներ։

Քաղաքի աշխատավորությունը հանդես է բերում իսկական հայրենասիրություն։ Դա արտահայտվում է տնտեսական և սոցիալական զարգացման խնդիրների լուծման գործում ձեռք բերած աննախադեպ հաջողություններում։ Տասներորդ հնգամյակը և տասնմեկերորդ հնգամյակի մեկնարկային տարվա արդյունքները դրա կոնկրետ վկայությունն են։ Քաղաքի արդյունաբերության աշխատողները անցած հնգամյակի պլանը կատարեցին 103,7 տոկոսով, պլանից դուրս թողարկելով 70 միլիոն ռուբլու արտադրանք։ Արտադրության ծավալի աճը հինգ տարում կազմեց 58,2 տոկոս։

Նրանք լարված աշխատանք ծավալեցին տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները և սոցպարտավորությունները ևս հաջողությամբ կատարելու համար։ 1981 թ. հետ հաշիվները փակեցին դեկտեմբերի 13-ին, ընդ որում, պլանից դուրս թողարկվեց 23,7 միլիոն ռուբլու արտադրանք՝ սոցմրցությամբ ստանձնած 6 միլիոն ռուբլու փոխարեն։ Լավ են նաև որակական ցուցանիշները։ Բավական է ասել, որ ընդհանուր արտադրանքի 44,2 տոկոսը թողարկվում է պետական որականիշով։

Սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ են առնում հայրենասիրական նոր նախաձեռնություններ, որոնք խթանում են արտադրության առաջընթացը։ «Ոչ մի ետ մնացող», «Կիրովականյան մակնիշով արտադրանքը՝ միայն բարձր որակի», «ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» նշանաբանները հնգամյակի առաջին իսկ օրից ուղեկցում են քաղաքի աշխատավորներին։ Հայրենանվեր աշխատանքի համար քաղաքի կո-



լեկտիվները արժանանում են միութենական և հանրապետական բարձր պարգևների, նվաճում փոխանցիկ կարմիր դրոշներ և դրամական մրցանակներ։ Յուրաքանչյուր աշխատող, ամեն մի բնակիչ իր պատվի գործն է համարում Կիրովականը դարձնել բարձրարտադրողական աշխատանքի, օրինակելի կենցաղավարության, կուլտուրայի և հասարակական կարգ ու կանոնի քաղաք։ Նրանց պատրաստակամության հանրագումարը դարձավ այդպիսի պարտավորության ստանձնումը քաղաքային կուսակցական կազմակերպության կոնֆերանսում։

Ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը գաղափարական ու քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միասնական կոմպլեքսի բաղկացուցիչ մասն է։ Կուսակցության քաղաքային կոմիտեն սկզբնական կուսկազմակերպություններին օգնում և ուղղություն է տալիս, որպեսզի արտադրության և դաստիարակության պրոբլեմները դրվեն ու լուծվեն որպես մեր ընդհանուր գործի հաջողությունն ապահովող միասնական կոմպլեքս։

ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ բարդ պրոցես է, որի հաջող զարգացումը պայմանավորված է կյանքի բոլոր ոլորտներում կուսակցության ակտիվ գործունեությամբ, որը ներառում է սոցիալ-քաղաքական, գաղափարախոսական, տնտեսական, բարոյաէթիկական հարցերը։ Եվ ահա քաղաքի կուսկազմակերպությունները ձգտում են ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը լուծելիս հանդես բերել կոմպլեքսային մոտեցում։ Նրանք աշխատանքը պլանավորում են այնպես, որ այն ընդգրկի մարդու կյանքի բոլոր կողմերը՝ ընտանիք, ուսուցման պրոցես, արտադրություն։ Մենք մշտապես հիշում ենք, որ սովետական մարդը մանկուց իսկ պետք է համակվի իր հայրենիքին, իր ժողովրդին պատկանելու գիտակցությամբ։ Իսկ այդ գիտակցությունը ծնվում է ընտանիքում՝ փոքր հասակից, ամրապնդվում սովորելու պրոցեսում և դրսևորվում աշխատանքային կոլեկտիվներում։

Քաղաքում կազմակերպվում են մեր երկրի տարբեր հանրապետությունների արվեստի տոներ, շաբաթներ, որոնք մեծ հետաքրքրություն են առաջ բերում աշխատավորության շրջանում։ Համերգներ են տվել Մերձբալթյան հանրապետություններից, Ռուսաստանյան Ֆեդերացիայից, Բելոռուսիայից ժամանած շատ խմբեր։ Կիրովականում եղել են նաև սոցիալիստական երկրներից ժամանած արվեստի գործիչները։ Համերգներից առաջ, որպես կանոն, տեղի է ունենում երեկոյի բացման արարողությունը, որի ժամանակ մասնակիցների համար կարդացվում է համառոտ զեկուցում տվյալ հանրապետության տնտեսական և սոցիալ-կուլտուրական նվաճումների մասին։ Հանդիպումները վերածվում են ջերմ բարեկամության ցույցի։

Ինչպես հայտնի է, տարվա ընթացքում Կիրովական են ժամանում շուրջ 20 հազար զբոսաշրջիկներ։ Նրանք գալիս են մեր երկրի տարբեր վայրերից և քաղաքում մնում 3—4 օր, ծանոթանում են հանրապետության, քաղաքի աշխատավորության կյանքին։ Նրանց հետ անցկացվում են զրույցներ, կազմակերպվում հանդիպումներ կոլեկտիվների հետ։ Այդ ճանապարհով ևս ամրապնդվում է բարեկամությունը։ Ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման կարևոր օջախ է դարձել «Հայաստան» առողջարանը։ Այստեղ ամեն տարի բուժվում և հանգստանում են մեր երկրի տարբեր վայրերից այցելած հարյուրավոր մարդիկ։ Բացի բժշկական օգնությունից, առողջարանի ղեկավարությունը հանգստացողների և բուժվողների համար կազմակերպում է զանազան միջոցառումներ։ Քաղկոմի դասախոսական խումբը և «Գիտելիք» ընկերության անդամները նրանց համար պլանավորված կարգով կարդում են դասախոսություններ տարբեր թեմաների շուրջ։ Հանգստացողների և բուժվողների մեջ լինում են տարբեր մասնագիտությունների տեր մարդիկ։ Նրանք էլ իրենց հերթին ելույթներով հանդես են գալիս քաղաքի կոլեկտիվներում։

Քաղաքում գործում են մի շարք արվեստի օջախներ, որոնք ևս քիչ ծառայություններ չունեն աշխատավորների, հատկապես երիտասարդության և մատաղ սերնդի ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության գործում։ Ուսանելի է հատկապես նկարչական դպրոցի գործունեությունը։

## ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում

# ԱՅՍՏԵՂ ԵՂԲԱՅՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎՈՐՈՒՅԹ Է, ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ՝ ՕՐԵՆՔ...

Երկու դար առաջ այսպես է գրել մեծ բանաստեղծ, մտածող, Թուրքմեն գրականության դասական Մախ-տումկուլի-Ֆրագին, որն իմաստուն կերպով գովերգել է իր ժողովրդի նվիրա-կան իղձերն այն ժամանակվա, երբ

*Ցեղերն ապրում են միասնական ընտանիքում, -*
*Խնճույքի համար մեկ սեղան է բացված...*

Այո՜, ժողովուրդը երազում էր լուսավոր ապագա, հավատում դրան: Բայց, ավա՜ղ, ինչպիսի կրքոտությամբ էլ որ ցանկանար բանաստեղծը, նրա ամե-նավսեմ ու ազնիվ երազանքները մնում էին անիրագործելի, քանի նահապե-տական-ավատական կացութաձևն ասես դարերով քարացել և մշտական երկ-պառակությամբ ու թշնամանքով բզկտված ժողովուրդները չէին կարողանում համախմբվել ընդհանուր տոնական սեղանի շուրջը:

Եվ խորապես ճշմարիտ է ասված՝ Հոկտեմբերն իմ ճակատագիրն է, իմ վերածնունդը: Այսօր Թուրքմեն ժողովրդի շուրթերին հնչող այս խոսքերում ան-սահման երախտագիտության զգացում կա մեծ Հոկտեմբերի, նրա առաջնորդ Լենինի նկատմամբ, որը նոր ուղի նշեց կեղեքված ժողովուրդների համար, նրանց մարտի կոչեց այս աշխարհում ամենաարդարացի՝ կոմունիստական հասարակության ստեղծման համար, մի հասարակություն, որտեղ եղբայրու-թյունն իրոք սովորույթ է, բարեկամությունը՝ օրենք:

Եվ իրոք, Հոկտեմբերի իդեալներին, Լենինի հանճարին ենք պարտական պատմության մեջ ժողովուրդների աննախադեպ համագործակցության՝ Սովե-տական Սոցիալիստական Հանրապետությունների Միության, ստեղծման հա-մար: Ահա արդեն վեց տասնամյակ աշխարհին այն ի ցույց է դնում անխախտ միասնությունը եղբայրական ժողովուրդների, որոնք միավորված են բացար-ձակ ազատության, լիակատար հավասարության և ազգային սուվերենության սկզբունքներով: Նրանում ռեալ կերպով մարմնավորվում են մարքսիզմ-լենի-նիզմի անմահ ուսմունքի խոր ինտերնացիոնալիստական էությունը, մեր կո-մունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը, կու-սակցություն, որը բարգավաճման հավասար պայմաններ է ապահովել և ապա-հովում միասնական սովետական պետության կազմի մեջ մտնող բոլոր ազ-գերի և ազգությունների համար:

Ազգային հանրապետությունների պայծառ համաստեղության մեջ հավա-սարներից մեկն է Սովետական Թուրքմենստանը: Իր սոցիալ-տնտեսական ու հոգևոր կյանքի զարմանահրաշ վերափոխությունները Թուրքմեն ժողովուրդը կարողացավ իրականացնել միայն սոցիալիստական կարգերի պայմաններում, շնորհիվ մեր ժողովուրդների իսկական բարեկամության ու եղբայրության հա-րաբերությունների, Սովետական Միության կոմունիստական կուսակցության



շուրջը նրանց սերտ համախմբվածության: Այդ վերափոխությունների շնորհիվ մեր ժողովուրդը հասավ արդի առաջընթացի վեհ բարձունքներին:

Սովետական բազմազգ ժողովրդի բարեկամության՝ որպես ստեղծագոր-ծական մեծ ուժի մասին լավ է ասել Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը. «Սոցիալիզմը գոր-ծողության մեջ դրեց մեր զարգացման մի այնպիսի զորեղ շարժիչ ուժ, ինչպի-սին է ժողովուրդների բարեկամությունը: Սովետական բազմազգ ժողովրդի միասնությունն ամուր է, ինչպես ադամանդը: Եվ ինչպես ադամանդն է փայլ-փլում երփներանգ գույներով, այնպես էլ մեր ժողովրդի միասնությունն է շողշողում այն կազմող ազգերի բազմազանությամբ, որոնցից յուրաքանչյուրն ապրում է լիարյուն, ազատ ու երջանիկ կյանքով» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 128):

Թուրքմենստանը մեր երկրի ամենահարավային հանրապետությունն է (ավելացնենք նաև՝ ամենահարավային «կետը»): Այն ամենահարավայինն էր նաև նախահեղափոխական ժամանակաշրջանում, բայց ցարական Ռուսաստա-նի ամենահետամնաց ծայրամասն էր: Երկրամասում միայն երկու ձեռնար-կություն կար՝ շուրջ հարյուր բանվորով: Իսկ հիմնականում սննդի և կաշվի արդյունաբերությունը ներկայացված էր մանր տնայնագործական ու կիսա-տնայնագործական արտադրանքով, բամբակահումքի զտման ձեռնարկություն-ներով, փոքր շոգեաղացներով և այլն: Ընդամենը կար 64 երկաթե գութան, 36 բամբակացան մեքենա, 114 կուլտիվատոր: Դեհկանի ամենատարածված գոր-ծիքը օմաչն էր՝ փայտյա արորը: Երկրամասում իշխում էր գրեթե լիակատար անգրագիտությունը:

Ներկայումս Սովետական Թուրքմենստանը նավթի ու բնական գազի, էներգետիկայի ու քիմիայի, բամբակի ու կարակուլի երկրամաս է: Այն բարձր զարգացած արդյունաբերության ու մեքենայացված գյուղատնտեսության ժա-մանակակից սոցիալիստական հանրապետություն է: Աննախադեպ բարձունք-ների են հասել ժողովրդական կրթությունը, առողջապահությունը, գիտությունն ու կուլտուրան:

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման վիթխարի հասումների մա-սին է վկայում, օրինակ, հետևյալ փաստը. այժմ մեկ օրում արտադրվում է ավելի շատ էլեկտրաէներգիա, քան նախահեղափոխական մեկ ամբողջ տա-րում: Սոցիալիստական շինարարության տարիներին լրիվին կերպարանափոխ-վել է արդյունաբերությունը: Թուրքմենստանի տերիտորիան ծածկված է ար-դյունաբերական ձեռնարկությունների խիտ ցանցով: Առաջատար ճյուղերն են՝ նավթի, գազի, քիմիական, մեքենաշինության, թեթև ու սննդի արդյունաբե-րությունը, շինարարական ինդուստրիան: Մեքենաները, նավթը, նատրիումի սուլֆատը, ծծումբը, բամբակը, կարակուլը, ապակին, համաշխարհային փառ-քի արժանացած գորգերը և Թուրքմենստանի այլ արտադրանքներ իրենց որո-շակի բաժինն ունեն Սովետական Միության ընդհանուր արտահանության մեջ: Սովետական տարիներին հանրապետության արդյունաբերական արտադրու-թյան ծավալը մեծացել է ավելի քան 75 անգամ: Մինչհեղափոխական շրջանի համեմատությամբ նավթի հանույթն ավելացել է 114 անգամ:

Երկրի տնտեսական պոտենցիալում հատկապես զգալի է գազի ինդուս-տրիան՝ հանրապետության ժողովրդական տնտեսության այդ երիտասարդ ճյուղը, որ վերջին տարիներս զարգանում է ինտենսիվ կերպով: Բացվել են բնական գազի խոշորագույն նոր հանքավայրեր՝ Աչակի, Նաիպի, Շատլիկի, Գուգուրթլիի, Դովլեթաբադի և այլն: Դրանով իսկ Թուրքմենստանը դարձավ երկրի բնական գազի խոշորագույն մատակարարներից մեկը: Միայն Շատլիկի հանքավայրում գազի պաշարը հասնում է հարյուր միլիարդավոր խորանարդ մետրի: Միջինասիական հանրապետությունների և Ղազախստանի գազի են-թադրյալ պաշարների ավելի քան 40 տոկոսը գտնվում է մեր հանրապետու-թյունում: Մեկ քառակուսի կիլոմետրին ընկնող գազապաշարներով հանրա-պետությունը Միությունում այսօր գրավում է երկրորդ տեղը ՌՍՖՍՀ Տյումենի մարզից հետո:

Գազամուղներ են անցկացվել նավթի հանքավայրերից: Դրանք գազ են մատակարարում հանրապետության ներքին կարիքների համար և Միջին

դարտ, մանկական զգացումով, գրել է. «Կովկասի կապույտ լեռներ, ողջունում եմ ձեզ, դուք փայփայել, գուրգուրել եք իմ մանկությունը, դուք երկնքին եք ինձ սովորեցրել, և այն ժամանակից ի վեր ես միշտ երազում եմ ձեր մասին ու երկնքի մասին»:

Այսինքն՝ սովորեցրել եք ամբողջ հոգով ու կարոտով ձգտել դեպի վեր, կատարելություն, անհաս բարձրություն...

Նույնը, թերևս ավելի խոր հիմունքով, երախտագիտությամբ իրավունք ուներ ասելու Տերյանը, որ ծնվել ու մեծացել է սարերում, որի մանկությունը ևս «գուրգուրել ու փայփայել» են հայրենի սարերը, հոգի ու շունչ տվել նրա երազանքներին:

Մանկության տարիների առաջին ջինջ ու վառ տպավորություններում ու ապրումներում, երբ դեռ ներաշխարհը, գիտակցությունը պղտորված չէ իրականության այլանդակություններով, կա հրապուրիչ մի քաղցրություն, որն զգում է մարդ տարիներ հետո, երբ անցնում է նա կյանքի դժվարին, քարքարոտ ուղին:

Տերյանին ևս հարազատ է այդ զգացումը, բուռն ցանկությունը, հոգեկան ծարավը՝ վերադառնալ մանկության տարիների հուշերին, վերապրել մանկության «հրաշքը»:

1912 թվականի հունվարին Տերյանը գրում է Ստավրոպոլից. «Ամենից հաճախ ես դառնում եմ տուն, դեպի մեր գյուղը, մեր գետը, մեր տան դիմացի բլուրը, ուր ընկերներիս հետ խաղում էինք այն ժամանակ... Շատ բաներ էին կատարվում այն ժամանակ, այնքա՜ն հրաշք կար ու չտեսնված դյութական բան կար մեր գյուղում, գետի ափին, բլուրի մոտ...»:

Նույն տրամադրությունն է արտահայտված Տերյանի բանաստեղծական տողերում.

*Կարծես թե դարձել եմ ես տուն,*
*բոլորն առաջվանն է կրկին...*
*...Նորից ես մանուկ եմ այսօր,*
*դրախտ է նորից իմ հոգում...*

Երկար տարիներ ապրելով կուլտուրական խոշոր կենտրոններում, մարդաշատ աղմկալից քաղաքներում, Տերյանը հոգով մնացել է լեռնցի: Նա իրեն համարել է հայրենի «սարերի զավակ», ուր փնտրել է անդորր ու երջանկություն:

Տերյանը քնարերգու բանաստեղծ է և բնությունը, կյանքը, շրջապատող առարկաներն ու երևույթները նա դիտում է գերազանցապես բանաստեղծական աշխարհայեցության տեսանկյունից: Նրա «լիրիկական հերոսի» և բանաստեղծի անձի միջև չկա որևէ տարածություն: Նա խոսում է իր անունից, արտահայտում իր սեփական զգացումներն ու հույզերը: Սակայն Տերյանի երազանքների ու խոհերի աշխարհը սահմանափակված չէ մանր, նեղ, սուբյեկտիվ ապրումներով ու տրամադրություններով: Նրա տխուր բանաստեղծություններում իր ուրույն արտահայտությունն են գտել հայ ժողովրդի պատմական ճակատագիրը, նրա վիշտն ու տառապանքները, նրա տենչերն ու վեհ ձգտումները:

Տերյանի ոճին, պոետիկային խորթ են կոպիտ գծեր, արտաքին փայլ, բռնազբոսիկ, հնարովի-արհեստական պատկերներ, բարդ ոճավորումներ, ճոռոմ, աղմկալից արտահայտություններ, ինչպես կասեր Իսահակյանը՝ «շռինդ ու շառաչ»: Տերյանը սիրում է նրբին գույներ, մեղմ հնչյուններ, «վճիտ ու խոր» խոսքեր: Նրա լեզվի հարստությունները ներքնարանգներումն են, մի հատկություն, որը պայմանավորված է նրա բանաստեղծական աշխարհի ու նրա քնարերգության բնույթով ու բովանդակությամբ: Նա, ինչպես բնորոշել է Իսահակյանը, «մաքուր լիրիկայի», «բյուրեղային լիրիզմի» խոշորագույն վարպետներից մեկն է. Այդ իմաստով Իսահակյանը համարել է Տերյանին «կատար, լեռ-բարձունք» ու դասել նրան համաշխարհային քնարերգու բանաստեղծների շարքը:

Հասարակական կյանքի հրատապ հարցերը միշտ զբաղեցրել, հուզել են Տերյանին: Սակայն քաղաքացիական բանաստեղծության նկատմամբ նա ծայրաստիճան խստապահանջ է եղել, համարել է այն քնարերգության դժվարագույն ժանրերից մեկը: Առաջին ռուսական հեղափոխության տարիներին, երբ Տերյանն ամբողջովին կլանված կարդում, ուսումնասիրում էր փիլիսոփայական, սոցիոլոգիական բովանդակության աշխատություններ, փորձում է գրել քաղաքացիական բանաստեղծություններ: Անգամ տպագրում է մի երկու-երեք բանաստեղծություն: Հետագայում նա համառ կերպով աշխատում է այդ ուղղությամբ, բայց խուսափում է հանդես գալ մամուլում իր որոնումների արդյունքներով: Այդ տարիների փորձերը չեն բավարարել հեղինակին, և նա ոչնչացրել է ձեռագրերը: Այն մասին, թե ինչպիսի պատկերացում ուներ Տերյանը քաղաքացիական պոեզիայի նկատմամբ, կարելի է դատել նրա հետագա շրջանում գրված հայրենասիրական բանաստեղծություններից: Երբ քննադատներից մեկը Նաիրյան ցիկլը բնութագրելով ասել է, որ դրանք թեև «քիչ բանաստեղծական են, բայց իմաստուն են», Տերյանն այդ առիթով գրել է Ալ. Ծատուրյանին. «Այդ վերջին հանգամանքը ինձ, իհարկե, չի կարող մխիթարել, վասնզի ես գրել եմ բանաստեղծություն, այնպես չէ՞, և ոչ «իմաստասիրական» երկ»:

Հայրենիքի ձայնը միշտ հնչել է Տերյանի քնարերգության մեջ, տարբեր հասարակական



ու անձնական ապրումների մթնոլորտում, ստանալով տարբեր երանգավորում: Չի եղել պոետի կյանքում այնպիսի մի շրջան, որ նա դադարեր խորհել հայրենի երկրի ու ժողովրդի վիճակի մասին:

Կան բացառիկ մի երկու բանաստեղծություն, հոգեկան ծանր տագնապի ծնունդ, ուր առանձին տողերը կարող են առիթ տալ նրանց բուն իմաստի սխալ մեկնաբանության.

*Հայրենի տունս՝ իմ սրտին օտար...*
*Հավիտյան օտար, հայրենական տուն...*

**Երկիր Նաիրի** հայրենասիրական բանաստեղծությունների համար որպես բնաբան հեղինակն ընտրել է Լերմոնտովի Հայրենիքի առաջին հանրահայտ տողը.

*Սիրում եմ ես հայրենիքը, բայց*
*տարօրինակ սիրով...*

Տերյանի «տարօրինակ սիրո» բնույթը դեպ հայրենիքը հնարավոր է հասկանալ, միայն ելնելով նրա անհատականությունից, նրա բանաստեղծական մտածողության օրինաչափություններից:

Բանաստեղծական, առավել ևս քնարական երկի բովանդակությունը, իմաստը հասկանալու համար քննադատական դատողություններում պետք է ելնել նրա ներքին ամբողջականությունից, արտահայտված հոգեվիճակից, և ոչ թե առանձին տողերից, որոնք վերցված անջատված, մեկուսացած կենդանի կառուցվածքի միասնությունից, կարող են ստանալ հեղինակի մտքին միանգամայն խորթ, բռնազբոսիկ, կամայական իմաստ:

Ահա այն բանաստեղծությունը, որտեղից վերցված է վերևում հիշատակված երկու տողը.

*Ես անջատված եմ հայրենի հողից,*
*հայրենի տունս՝ իմ սրտին օտար,*
*ինձ այրում է միշտ մի անհագ թախիծ,—*
*հավիտյան դյութող անհայտ ճանապարհ...*

*Հուզվում են, հոսում հեղեղները մեծ,*
*մագլցում վերև և թավալվում ցած.*
*զմրուխտե ջրեր, ձեզ ո՞վ վրդովեց,*
*հայրենական տո՜ւն, հավետ մոռացված...*

*Միևնույն է ինձ Հյուսիս թե Հարավ,—*
*մի խենթ տագնապ կա իմ հիվանդ սրտում.*
*կա իմ հոգու մեջ մի անհագ ծարավ.*
*— Հավիտյան օտար, հայրենակա՛ն տո՜ւն...*

Այս տողերում թաքնված տրամադրության մեջ դժվար է տեսնել անտարբերության կնիքը: Այստեղ, ավելի ճիշտ, սրտի մորմոք, կսկիծ, դառնություն կան: Նույն հոգեվիճակն է տարբեր գունավորումներով «Գիշեր» և «Հայրենիքում» բանաստեղծություններում, ուր գանգատ ու բողոք է «ցուրտ» ու «չար» աշխարհի դեմ:

*Իմ դուռն է ծեծում քամին խոլական,*
*իմ պատերի տակ հեծում է անվերջ,*
*մեղմիվ երգում է մեղեդին լալկան,*
*ոռնում ամայի փողոցների մեջ...*

*...Եվ անպատմելի ցավով է լցված*
*այդ երգը անանց հուսահատության.—*
*մթին գիշերում իմ սիրտը խոցված,*
*լացը հուսաբեկ ավերված իմ տան...*

Բանաստեղծը խորհում է խորտակված ցնորքների ու տենչերի, անցած «տաղտկալի ու մոլոր» ուղիների մասին: Ամենուր նա տեսնում է «խավար», «մահ ու ավեր», և դառնացած, խռով հոգով ասում է.

*Ավերվա՜ծ ես դու, հայրենական տուն...*
*...Ահ, այս ցուրտ երկրի անհայտում անհուն*
*ընկնել և կորչել և ննջել հավետ,*
*ոչնչանալ ու մոռացվել քեզ հետ,*
*ավերված երազ— հայրենական տո՜ւն...*

Թախիծն ու հուսալքումը, տրտունջն ու գանգատը, անձնական ապրումներն ու խոհերը այդ բանաստեղծություններում, ուր «ավերված հայրենական տան» պատկերն ու հեղինակի բախտը միաձույլ են, խտացել, գեղարվեստական ընդհանրացում են ստացել: Քաղաքական կացության ծանր մթնոլորտում է ծագում «ավերված երազի», «ավերված հայրենական տան» տխուր պատկերը, հայրենական տան, որն ավերված է, «բայց սուրբ է և հին», բանաստեղծը երանի է տալիս նրան, ով «հայրենական տուն ունի», ո՜վ «հանգչում է խաղաղ հարկի տակ»: Այդ տրամադրությունն ավելի մռայլվում է անձնական վիճակով, «անտուն ու անտեր» թափառականի խոհերով «օտար երկնքի կամարների տակ»:

*Մանկուց ընտրեցի ճամփորդական ցուպ,*
*թողի հայրենի տընակս ավեր...*

*...Ես ընկած էի օտար աշխարհում,*
*անարև երկնի կամարների տակ...*

Այսպիսով, հայ ժողովրդական բանահյուսության և պոեզիայի բնորոշ պանդխտության թեման Տերյանի քնարերգության մեջ գտնում է ինքնօրինակ զարգացում: Միաժամանակ «օտար երկիր», «օտար հող» արտահայտությունները բանաստեղծի բառարանում հանդիսանում են նաև «աղոտ», «ունայն երկրի», «անգութ աշխարհի» խտացրած պատկերը:

Տերյանը չի տարված իր անձով, անհատապաշտական տրամադրություններով: Նա իրեն չի բաժանում մյուս մարդկանցից, նրա տեսադաշտում է ողջ մարդկությունը.

*Հեռավոր մարդոց ցավերը կզգամ...*
*...Այս մութ գիշերում այնքան կա թախիծ,*
*այնքան տրտունջ ու գանգատ կա հիմա...*
*Չէ՞ որ բոլորն են տանջվում...*

*Աշխարհից այս խավար ինձ տարեք,*
*ինձ տարեք այս երկրից անարեգ,*

*Ինձ տարեք մեր դաշտերը պայծառ,*
*մեր սարերն անառիկ, վեհանիստ,*
*մեր արտերն արևոտ ու հանգիստ...*

*...Փրկեցե՛ք սրերից այս սուրսայր,*
*խորախոց խոհերից իմաստուն,*
*մեր սարերը տարեք, տարեք տուն...*

Մայր հողի ծարավով են տոգորված Տերյանի կյանքի վերջին շրջանի տխուր երգերը։ Եվ քանի գնում, նրա հոգում ավելի ուժգին «բաղձալի, լուսավոր ու դյութական» է հնչում հայրենիքի ձայնը։ Երկա՜ր, մոլոր ու տանջալից թափառումներից հետո նա վերադառնում է հայրենիք, կարոտագին դիմում նրան.

*Չկա քեզնից գերիչ երազ,*
*քո անունից անուշ անուն...*

Տերյանը խանդավառությամբ ողջունեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը. գրեց մարտի ու հաղթանակի երգեր, փառաբանեց նրանց, ովքեր քանդում էին հին աշխարհը։ Նա կոչեց բոլոր ճնշվածներին, հալածվածներին՝ դուրս թափվել մութ խուցերից փողոց, որոտալ որպես «հողմ»՝ ոչնչացնելով իրենց ճանապարհին բռնության կապանքները։

Տերյանը խորապես գիտակցեց մեծ Հոկտեմբերի պատմական բախտորոշ նշանակությունը մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի ապագայի համար։ Ոգևորված լենինյան ուսմունքով՝ նա թարգմանեց հայերեն Լենինի առանձին աշխատությունները, գովերգեց ազատության «կարմիր, արյունաբորբ դրոշը», իր վերջին ուժերը նվիրաբերելով սոցիալիստական հասարակարգի կառուցման գործին։

Տերյանի գովերգած հայրենիքը ծաղկում է, առնականանում, և մեր այսօրվա առաջընթացի գագաթներից երախտապարտ ժողովուրդը անհուն սիրո զգացումով է մեծարում իր «վաղվա գուշակ» քնարերգուին, որ վառեց իր երգերը որպես դրոշակ և մեռավ, որպես հերոսն է մեռնում։

## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

*Անհրաժեշտ ենք համարում ընթերցողի ուշադրությանը ներկայացնել Վ. Ի. Լենինի «Պետություն և հեղափոխություն» գրքի՝ Վահան Տերյանի թարգմանության վերաբերյալ Ալ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ գնահատականը, որ նա տվել է գրքի հայերեն առաջին հրատարակության առթիվ 1921 թվականի հունվարին։*

«...Վահան Տերյանը շատ լավ էր ըմբռնում մարքսիզմի այդ քաղաքական հիմունքները։ Ռուսաստանի հոկտեմբերյան օրերին պրոլետարիատի հետ միասին և նրա շարքերում նա էլ դուրս եկավ բարիկադ, տակավին մինչ հոկտեմբերը նա կռիվ էր մղում մանրբուրժուական անբարոյականացնող կարգերի դեմ։ Ահա թե ինչու մի հայ խաղաղ բանաստեղծ, մի լիրիկ կարևոր համարեց Լենինի խոշոր գրվածքը հայ ընթերցողին մատուցել և դեռ այն ժամանակ, երբ այդ ընթերցողը տնքում էր հայ ու եվրոպական ենիչերիների դժնդակ լծի տակ։

Տերյանի թարգմանությունը իսկապես նրա հեղափոխական պատգամն է հայ պրոլետարիատին։ Տերյանն այսուհետև անբաժանելի է պրոլետարիատից և մասնավորապես հայ աշխատավորից։ Նրա համար նա աշխատեց երկար ժամանակ, նրա համար նա կռվեց և կռվում ստացավ մահացու վերք։ Մինչև վերջին շունչը նա մնաց պրոլետարիատին հավատարիմ։ Եվ հեռավոր Օրենբուրգում, վերջին պահ ամուր կանգնած հեղափոխության ու կոմունիզմի դիրքում ու մտատարված պրոլետարիատի հոգսերով, նա կնքեց իր մահկանացուն։

Մեծ գրքի հայկական փարթամ թարգմանությունը, լինելով մի ուղեցույց աստղ և հայ պրոլետարիատի համար, թող լինի և մի հավետ մահարձան՝ ընկած խոշոր հայ գրողի ու խիզախ մարտիկի հեռավոր ու անշուք շիրիմի վրա»։

ԱԼ. ՄԱՐՏՈՒՆԻ

Հայաստանի կոմկուսի պատմության
էջերից

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԸ ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՂԵԿԱՎԱՐ

Մ. Վ. ՄԿՐՏՉՅԱՆ

ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ հեղափոխության հիմնական խնդիրներից մեկը ագրարային հարցն էր։ Դա պայմանավորված էր գյուղացիական մասսաներին պրոլետարիատի հեղափոխական պայքարին մասնակից դարձնելու, նրան ճնշումից ու շահագործումից ազատագրելու անհրաժեշտությամբ։

Հայաստանում ևս աշխատավոր գյուղացիության կեղեքումն անցնում էր ամեն չափ ու սահման։ Գնալով աճում էին ուղղակի և անուղղակի հարկերը։ Հեղափոխության տարիներին, գյուղացիական ելույթները ճնշելու համար, ցարական իշխանությունները սկսեցին մեծ տուգանքներ նշանակել գյուղերի վրա։ Գյուղացիների գրկանքներին ու տառապանքներին ավելացած այս նոր ճնշումը կատարյալ քայքայման էր հասցնում նրանց։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով և կուսակցության III համագումարի որոշումներով, է՛լ ավելի ուժեղացրին գյուղացիությանը դեմոկրատական հեղափոխության մեջ ներգրավելու համար մղվող պայքարը։ Հայկական գյուղում, սակայն, բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների ազդեցությունը բավականաչափ ուժեղ էր։ Անհրաժեշտ էր գյուղական աշխատավորությանը համախմբել բոլշևիկյան կազմակերպությունների շուրջը և նրանց ազատագրական պայքարը միավորել բանվոր դասակարգի հեղափոխական շարժման հետ՝ ընդդեմ ցարի, հանուն դեմոկրատական ազատության, ընդդեմ բուրժուազիայի, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի։

Բոլշևիկների եռանդուն աշխատանքը, չնայած բազմաթիվ խոչընդոտներին, բուրժուանացիոնալիստական կուսակցությունների համառ դիմադրությանը, հեղափոխության հենց առաջին ամիսներից տվեց իր որոշակի արդյունքը։ Հայ գյուղացիությունը ևս բոլշևիկների ղեկավարությամբ պայքարի ելավ տիրող կարգերի դեմ։ Այդ պայքարի ընթացքում կազմակերպելով գյուղացիական կոմիտեներ՝ բոլշևիկները նրանց միջոցով գյուղացիության շրջանում տարածում էին հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի գաղափարները, ձգտում գյուղացիության անկազմակերպ, դեռևս ոչ համերաշխ պայքարին տալ կազմակերպված բնույթ և այն միացնել ցարիզմի դեմ պրոլետարիատի մղած պայքարի հետ։

Գյուղերում բոլշևիկյան կազմակերպությունները տարածում էին թռուցիկներ, ստեղծում հեղափոխական գյուղացիական կոմիտեներ։ Գյուղացիների շրջանում լայն տարածում ուներ Վ. Ի. Լենինի **Գյուղական չքավորությանը** բրոշյուրը, որը պարբերաբար վերահրատարակվում էր տարբեր լեզուներով։

Աշխատավոր գյուղացիությունը, որը դարեր շարունակ պայքարել էր հող և ազատություն ձեռք բերելու համար, սկսում էր հասկանալ, որ դրան նա կարող է հասնել միայն բանվոր դասակարգի օգնությամբ, նրա հերոսական պայքարի շնորհիվ։ Այդ համոզմունքը գյուղացիությանը դարձնում էր բանվոր դասակարգի հավատարիմ դաշնակիցը։ Այսպիսով, դեմոկրատական ազատության համար մղվող պայքարում ծնվում և կոփվում էր բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։

1905 թ. սկզբներին բանվորների հեղափոխական ելույթների ազդեցության տակ և սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ կալվածատերերի ու բեգերի դեմ պայքարի ելան Բորչալուի,

լովը, որին ձերբակալեցին և նետեցին Մետեխի բանտը։ Կ. Միխայլովին վերաբերող մեղադրական եզրակացության մեջ բերված էր գյուղացիներին ասած նրա հետևյալ խոսքերը. «Եթե կառավարությունը մեզ հող չի տալիս, ապա մենք ինքներս կխլենք այն, դուրս կանենք գյուղից պրիստավներին ու չինովնիկներին։ Թող կառավարությունն ու նրա չինովնիկները լավ իմանան, որ գյուղացին այլևս իր գլուխը չի խոնարհի... Կորչեն բռնակալները, կալվածատերերը և կապիտալիստները, կեցցե ազատությունը»[1]։

Ցարական սատրապները, ճնշելով Ղափանի գյուղացիների ելույթները, դաժան հաշվեհարդար տեսան նրա առավել աչքի ընկնող ղեկավարների, մասնավորապես բոլշևիկների հետ։ 1907 թ. գյուղացիական ելույթներ տեղի ունեցան նաև Լոռու, Նոր Բայազետի, Ախտայի, Կոտայքի, Էջմիածնի, Կարսի, Դարալագյազի շրջաններում։ Կալվածատեր Մելիք-Աղամալյանը Երևանի գավառի հաշտարար միջնորդին հայտնում է, որ Առինջի գյուղացիները հրաժարվում են մուլք վճարելուց։ Ջառ գյուղի կապալառու Ալիբեկ Հաջի Ալաքպարօղլին գրում է, որ գյուղացիներն իրեն մուլք չեն տալիս... բացարձակ հայտարարելով, որ կըջարդեն և կայրեն կալվածատիրոջը, ինչպես Ռուսաստանում են անում։

[1] *ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 34, գ. 271։*

Այս փաստերը ցույց են տալիս, որ հեղափոխության վայրէջքի շրջանում Հայաստանում դեռևս շարունակվում էին բանվորական և գյուղացիական ելույթները, բայց դրանք արդեն հանդարտված փոթորիկի արձագանքներն էին միայն։ «Հեղափոխական շարժումների այն ցանցը, որ ղեկավարեցին սոցիալ-դեմոկրատիայի առանձին խմբակներն ու կազմակերպությունները, մի պերճախոս ապացույց է այն փաստի, որ Հայաստանի գյուղական աշխատավորական շրջաններն իրենց սեփական փորձով նույնպես հանգել էին բանվոր դասակարգի հետ միասին կազմակերպված պայքար մղելու անհրաժեշտությանը։

1903—1907 թթ. հեղափոխական շարժումները Հայաստանում իրապես մի օղակ էին կազմում այն հսկա հեղափոխական շղթայի, որ զիգզագ իր հանգույցներով սեղմում էր ցարիզմը բովանդակ Ռուսաստանում» (Մելիք-Յոլչյան, **Հայաստանի բանվորական շարժման պատմությունից 1903—1907 թթ.**, Պետհրատ, Երևան, 1930, էջ 146)։

Այսպիսով, բոլշևիկների ղեկավարությամբ բանվոր դասակարգը 1905—1907 թվականների հեղափոխական մարտերում դրեց գյուղացիության հետ դաշինքի հիմքերը, ստեղծեց հասարակական այն ուժը, որը 1917 թվականին տապալեց կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը և մեր երկրի ժողովուրդների համար հարթեց սոցիալիզմի ուղին։



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Թ. ՏԱՏԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Գ. ԲՈՑՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ 375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36։

*Հանձնված է շարվածքի՝ 3.08.82 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 7.09.82 թ.։ ՎՖ 06233 Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունն՝ օֆսեթ։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 15.532։ Պատվեր՝ 1894։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2։*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.